

ՓԵՏՐՎԱՐ
№ 2
1956 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ԵՐԳ ՊԱՐՏԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Վ. ԱԼԱԶԱՆ





Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Միտքը դարի, փառքը դարի,
Մեծ Լենինի պարտիան անահ,
Դարձավ ոգին մեր պայքարի,
Ե՛վ առաջնորդ, և՛ մեծ բանակ:

Սովորեցրեց ցասմամբ ատել
Մեր թշնամուն ամենուրեք,
Մնալ զինվոր երկաթաթև,
Հոգով արի, կամքով՝ անթեք:



Սովորեցրեց գործը սիրել,
Սիրել գիրքը, ծաղիկ ու ծառ,
Մեզ խնդություն ու երգ բերեց
Եվ այս կյանքը լուսապայծառ:



Սովորեցրեց նայել հեռուն,
Սլանալ միշտ առաջ ու վեր.
Տվեց մեզ կամք, միտք սևեռուն,
Ու երկինքը ճեղքող թևեր:

Մեծ Լենինի պարտիան հզոր
Դեպի գալիքն է մեզ տանում,
Եվ դրոշներն ալ ու բոսոր
Բարձր, բարձր է ծածանում:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 2
ՓԵՏՐՎԱՐ

1956 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Կոմունիստական պարտիայի հնագույն անդամ Ս. Մարտիկյանը մի խումբ պիոներների հետ**

Լուսանկար՝ ՆԵՄՐՈՒԹԻ




Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
*(Գեներալ-մայոր)*

Երեսունութ տարի առաջ, 1918 թվականի փետրվարի 23-ին, Կարմիր Բանակի զորամասերը Նարվայի և Պսկովի տակ առաջին ջախջախիչ հարվածը հասցրին գերմանական իմպերիալիզմի մինչև ատամները զինված հորդաներին, որոնք հարձակվել էին երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի վրա: Այդ օրը դարձավ բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության Զինված Ուժերի ծննդյան օրը: Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակն ըստեղծվեց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու անմիջական ղեկավարությամբ և հենց առաջին օրերից սկսեց վճռականորեն պայքարել սպիտակգվարդիական հորդաների և օտարերկրյա զավթիչների դեմ, որոնք ձգտում էին խեղդել երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան: 1918-ից մինչև 1921 թվականը Կարմիր Բանակը ծանր կռիվներ մղեց բազմաթիվ թշնամիների դեմ և դուրս եկավ հաղթանակով:

Խաղաղ շինարարության տարիներին սովետական զինված ուժերն ավելի հզորացան ու կատարելագործվեցին:

Պաշտպանելով մեր ժողովրդի խաղաղ, ստեղծագործական աշխատանքը, Սովետական Բանակը շատ անգամ ստիպված է եղել անմոռանալի դասեր տալ ռազմական ավանտյուրաների սիրահարներին:

1941 թվականին սովետական մարդկանց խաղաղ աշխատանքն ընդհատվեց ֆաշիստական զավթիչների կողմից, որոնք ուխտադրուժ կերպով հարձակվեցին մեր Հայրենիքի վրա: Սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմը: Սովետական Միության վզին փաթաթած չորսամյա այդ պատերազմն ավարտվեց հիտլերյան Գերմանիայի ջախջախումով և ճապոնական իմպերիալիզմի պարտությամբ:

Մեր բանակը ֆաշիստական ստրկությունից ազատեց եվրոպական մի շարք երկրների ժողովուրդներին:

Հայրենական պատերազմում, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, սիրելի Հայրենիքի պատիվը, ազատությունն ու անկախությունը անձնազոհ կերպով պաշտպանում էին Սովետական Միության բոլոր ժողովուրդները՝ ուկրաինացիները, բելոռուսները, ադրբեջանցիները, հայերը, վրացիները, լատիշները, ուզբեկները և այլն:

Ժողովուրդների բարեկամությունն այն հզոր աղբյուրն էր, որի շնորհիվ սովետական ժողովուրդը հաղթանակ տարավ Հայրենական պատերազմում: Նա ջախջախիչ հարված հասցրեց նրանց, ովքեր ձգտեցին նվաճել նրա ազատությունն ու անկախությունը:

Սովետական ժողովուրդը և նրա բանակը խաղաղասեր են: Նրանք ոչ ոքի չեն սպառնում և չեն պատրաստվում որևէ մեկի վրա հարձակվելու. բայց նրանք լցված են վճռականությամբ՝ պաշտպանելու իրենց սոցիալիստական Հայրենիքի նվաճումները:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ հոգատար են մեր զինված ուժերի նկատմամբ և ամրապնդում են նրա մարտական հզորությունը:

# ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

1

Սովետական Բանակի տարեդարձը մոտենում էր։ Պիոներական ջոկատի խորհուրդը դեռ մի ամիս առաջ որոշեց այնպիսի մի հավաքույթ կազմակերպել, որ լավ սովորողներին նոր լիցք տա, իսկ ետ մնացողներին առաջ մղի։ Խորհրդի նիստից հետո օղակները բանակի մասին նյութեր գտան։ Բայց թե ինչպե՞ս անել, որ Սովետական Բանակի մասին պատմի Հայրենական պատերազմի իսկական մի մասնակից, կուրծքը մարտական շքանշաններով ու մեդալներով զարդարված, թիկնեղ ու բարձրահասակ մի հերոս...

— Այդպիսի մի ծնող կա.—սկսեց ջոկատավար Միքայել Սեդրակյանը, բայց նրա խոսքը կիսատ մնաց։ Պիոներական սենյակում հավաքված երեխաները միահամուռ վեր թռան ու շրջապատեցին ջոկատավարին։

— Ո՞վ է...

— Ո՞ւմ հայրն է...

Ջոկատավարը ձեռքով արեց, որ լռեն։

— Դժբախտաբար այդ ծնողը մերոնցից ոչ մեկի հայրն էլ չի...

Ջոկատավարի վրա գրոհած տաքարյունները դանդաղորեն նստեցին իրենց տեղերը։

— Այդ հերոսը տասներորդ ջոկատի պիոներ Մելինե Մաղաթյանի հայրն է,— խոսքը վերջացրեց ջոկատավարը։

Տիրեց լռություն։

— Երջանի՜կ ջոկատ,— թախծալի ասաց Տոլիկը։

— Դե՜, իհարկե, իրենց հավաքույթին կհրավիրեն,— տրտնջաց Թամարը։

— Մենք էլ գնանք պարենք,— հեգնեց ծաղրանկարիչ Բաբկենը։

Բոլորը փռթկացրին. բայց ջոկատավարն ու խորհրդի նախագահ Վահագնը խեթ նայեցին նրանց։ Նրանք անմիջապես լրջացան։

Այդպես էլ ցրվեցին։

2

Մյուս օրը առավոտյան Վահագնը վեր թռավ ինչ-որ աղմուկից. միջանցքի դուռը բախում էին։

—Վահա՛գն, Վահա՛գն,—կանչում էր Բաբկենը։

Վահագնը մաշիկները գցեց ոտքերը ու շտապեց դեպի դուռը, որ մայրը միշտ պինդ վրա էր քաշում աշխատանքի գնալիս։

Բաբկենը թափով ներս ընկավ դռնից. քիչ մնաց ընկերոջը գլորեր հատակին։

Վահագնը դողալով մտավ վերմակի տակ։ Նա ակնապիշ նայեց ընկերոջ բերանին։ Բաբկենն ընկավ մահճակալի մոտի աթոռին ու վերարկուի կոճակները քանդելով շարունակեց.

— Վահա՛գն, իմ հայրիկի գործարանի դիրեկտորը պատերազմի մասնակից է, հերոս։

— Սովետական Միությա՞ն,— ընդհատեց Վահագնը։

— Ոչ, աշխատանքի հերոս, սոցիալիստական աշխատանքի է՜...

— Ջա՛ն, ջա՛ն, ջա՛ն, ջա՛ն... ուրախությունից մահճակալի ցանցի վրա վեր-վեր թռչելով բացագանչեց Վահագնը։

— Եվ գիտե՞ս ինչ... գնդապետ է եղել...



— Մի անգամ էլ այսպիսի դեպք պատահեց։

Վահագնը դեն գցեց վերմակն ու սկսեց հագնվել։

— Շքանշաններ ունի, բայց չի կպցնում,— դժգոհեց Բաբկենը։

— Կխնդրենք, կկպցնի... Իսկ դեմքին սպի ունի՞,— խորհրդավոր հարցրեց Վահագնը։

— Չունի։ Հա,— հանկարծ հիշեց Բաբկենը,— հայրիկս ասում է, որ թևը վիրավորված է։

— Լավ, շուտ գնանք Միքայելի մոտ։

Եվ նրանք սանդուղքը ցնցելով վազեցին փողոց։

3

Հերոսին հրավիրելու լուրը շուտով բոլորն իմացան. իսկ դասղեկ Ջավահիր Մանուչարյանը խոստացավ խնդրել դպրոցի դիրեկտորին, որ խոսի գնդապետի հետ։

Այս բոլորը մի տեսակ զգաստացրեց ջոկատի պիոներներին։ Նույնիսկ Կարոն ու Սահականուշը խնդրեցին, որ ընկերներն իրենց օգնեն հայոց լեզվի գրավորից ու գերմաներենից, թե չէ խայտառակ կլինեն հերոսի առաջ։ Պատի թերթի նկարիչն ինչ-որ տեղից լավ ներկեր գտավ, իսկ Բաբկենն առաջարկեց զետեղել խաղաղության թշնամիների ծաղրանկարները։

Վրա հասավ փետրվարի քսաներեքը։ Երեկոյան ժամը վեցին ամբողջ ջոկատը դպրոցում էր. բայց ոչ ոք դասարան չէր մտնում։ Լայն ու լուսավոր միջանցքում մեկ-մեկ պոռթկում էր նրանց ծիծաղը։ Հեռու անկյունում խմբված աղջիկները մեղմաձայն կրկնում էին մի երգ, մի երկու տղա նոր ներկված ինքնաշեն շրջանակի մեջ փակցնում էին պատի թերթը, «լուսանկարիչ» Ռազմիկն ու իր ընկերն էլ կախում էին ֆոտո-թերթը։

Հանկարծ միջանցքի հեռավոր ծայրից թնդաց Վահագնի ձայնը՝

— Գալի՜ս են...

Երբ ջոկատն արդեն ուղղաձիգ գծով շարված էր դասարանի դռան դիմաց, սանդուղքի գլխին երևաց կապույտ կոստյում հագած, միջահասակ, թուխ դեմքով մի մարդ։ Դա հենց այն գնդապետն էր։ Նրա հետ զրուցելով ու մեկ-մեկ բարձր ծիծաղելով գալիս էին Բաբկենի հայրն ու դպրոցի դիրեկտորը։

Շարք կանգնած պիոներներն անթարթ նայում էին պատվավոր հյուրի կողմը։ Ա՜խ, որքա՜ն կուզենային նրանք այդ րոպեին բղավել, միմյանց հայտնել իրենց տպավորությունները գնդապետի մասին։ Բայց անհարմար էր այդպիսի մարդու առաջ թեկուզ աննշան չափով խախտել կարգապահությունը, «ջոկատի մարտական կարգը», ինչպես իրենք երեխաներն էին անվանում։

Գնդապետը եկավ կանգնեց շարքի առաջ, հիացած նայեց պիոներներին ու բարձր ձայնով ողջունեց...

Մի քանի րոպե հետո մտան դասարան։ Տոնական տրամադրությունը համակեց բոլորին։ Գրատախտակի վրա հարմարեցված կոչը, նստարանների վրա դրված ծաղկեփնջերը, ծաղկեշղթաներով երիզված ու կարմիր մահուդով ծածկված սեղանը... այս ամենը շատ հանդիսավոր էր։

Վերջապես գնդապետը ոտքի կանգնեց։ Միանգամից այնպիսի լռություն հաստատվեց, որ կարծես դասարանում ոչ ոք չկար։

Հանկարծ լույսերը հանգան. իսկ սեղանի դիմաց, փայտիկների կույտի տակ վառվեցին էլեկտրական լամպերը։ Կարմիր ու նարնջագույն լույսը ներքևից ընկավ գնդապետի դեմքին և նա պիոներներին պատկերացավ որպես մի դյուցազն։

Խարույկի տպավորությունն ուժեղ էր։ Անսպասելի հաճույքից բոլորը շշնջացին.

— Հրաշալի՜ է...

Հենց այդ ժամանակ հնչեց հերոսի ձայնը.

— Սիրելի բարեկամնե՛ր, Սովետական Մեծ Հայրենիքի պատանի պիոներնե՛ր...

Օ՜, ինչքա՜ն կուզենային այդ պատանիները, որ գնդապետը զինվորական համազգեստով լիներ, ուսադիրներով... Դեռ երկարաճիտ կոշիկներին էլ զնգային խթանները... Նրանցից շատերն իրենց պատկերացրին զինվորական համազգեստով, հրեղեն ձիերի վրա, կայծակի պես թրերը օդում շողշողացնելով... Իսկ գնդապետը շարունակում էր պատմել Սովետական Բանակի մասին։

Չգիտես ինչու առաջինն աղջիկները նկատեցին, որ նա աջ թևը լրիվ պարզել ու լայն շարժումներ կատարել չի կարողանում։ Եվ կիսամութի մեջ ընկղմված նստարաններով նորից մի շշուկ անցավ.

— Ի՞նչն է վիրավորել տեսնես...

— Գոնե ձախը լիներ...

Եվ կարծես նրանց պատասխանելու համար էր, որ հյուրն ասաց.

— Աջ թևիս արմունկը փշրված է. պայթուցիկ գնդակն է արել ձմռան մի օր, կարծեմ հենց փետրվարին... Բայց ավելի լավ է՝ ես ձեզ պատմեմ մի պատանի հերոսի մասին, որ իմ հրետանային գնդի մարտիկն էր։ Նրա անունը Միկոլա էր, ազգանունը Վարենիկ։ Երբ մեր հրետանային բրիգադան անցնում էր Ուկրաինայով, նա եկավ մեզ մոտ ու մնաց մինչև վերջ։ Իսկ պատերազմի նախավերջին տարին Միկոլան արդեն փորձված հետախույզ էր, Դավիթ Արամյանի անբաժան ընկերն ու օգնականը։ Այդ ժամանակ մեր զորքերը հետապնդում էին թշնամուն, որը նահանջում էր դեպի Բալթիկ ծովը, բայց և համառ դիմադրություն էր ցույց տալիս։ Մի անգամ էլ այսպիսի դեպք պատահեց։

Խոնավ ու ցուրտ երեկո էր։ Թշնամու տանկերի

և հետևակի գրոհները ետ մղելուց հետո, մարտիկները հանգստանում էին, երբ հրաման ստացվեց անմիջապես առաջ շարժվել դեպի Կերշելեն գյուղը։ Հետևակային զորամասերը հասել էին այնտեղ, բայց գետնի մեջ թաղված տանկերի և ինքնագնաց հրանոթների կրակը չէր թողնում գրավել գյուղը։ Իսկ այդ գյուղը գտնվում էր մի բլրի վրա և կարևոր կետ էր մեզ համար։



— Ո՞ւր է Արամյանը, Միկո՛լա...

Միկոլայենց մարտկոցն այնտեղ հասավ առավոտյան ժամը չորսին և կանգ առավ։ Մարտիկներն արդեն հրաման էին ստացել դիրքեր փորել, երբ լուր եկավ, թե առաջին մարտկոցը լուրջ հարված է ստացել գյուղի մոտ։ Թշնամու հրետանային ուժեղ կրակը ջարդել էր հրանոթներից երկուսը, սպանել և վիրավորել մարտիկներից շատերին։ Ցերեկն էլ հետևակային մի վաշտ էր ընկել այդ կրակի տակ։

Հրամանատարները զարմացել էին։ Թշնամին բարձր բլրի հետևից մարտկոցը տեսնել չէր կարող, իսկ գյուղում հրետանի չկար։ Ինչպե՞ս կարող էր այդքան դիպուկ խփել։

Մինչև որ կրակային դասակների մարտիկները դիրքեր, փոսեր և անցուղիներ փորեին, Դավիթ Արամյանն ու Միկոլան նստեցին խորհրդակցելու ղեկավարման դասակի հրամանատարի հետ։

— Այստեղ մի բան կա...— մտազբաղ ասաց Դավիթը։

— Դավաճանությո՞ւն, թե՞...— հարցական նայելով ավագ ընկերոջ աչքերին հարցրեց Միկոլան։

Դրանից նրա պեպենոտ դեմքն ավելի փոքրացավ։ Կճատ քիթն ավելի ցցվեց, իսկ աչքերն ավելի նեղացան։ Կարծես հայացքով ինչ-որ բան էր փնտրում կամ դժվար մի խնդիր լուծում։

— Ո՞վ գիտի... ուղղակի հրաշք է...

Դասակի հրամանատարը նայեց ժամացույցին։

— Ժամանակն է,— ասաց նա։

Հետախույզները վեր կացան։ Հրամանատարը սեղմեց նրանց ձեռքերը։

Դավիթն ու Միկոլան սկսեցին բարձրանալ դեպի գյուղ...

Լուսադեմին մարտկոցի հրամանատարի դիտակետ եկավ միայն պատանի Միկոլան և հետևակային վաշտի մի զինվոր։ Միկոլան առաջինն իջավ գետնափորը։ Նրա ճակատն ու ձախ ուսը կապած էին։ Նրանցից հետո, ռադիո-ապարատը շալակին, պատյանով անտեննան գոտու տակ խրած, բերանն ու ձեռքերը կապած և գլխաբաց ցած թռավ թշնամու ականոցավոր մի զինվոր։ Երրորդը՝ հետևակային վաշտի այն զինվորն էր։

— Ո՞ւր է Արամյանը, Միկո՛լա,— գերուն ոտից գլուխ չափելով տագնապով հարցրեց մարտկոցի հրամանատարը։

Միկոլան հուզմունքից շրթունքները կծելով հազիվ ասաց.

— Սա... ավտոմատո՛վ... Դե՛, գիտեք էլի Դավթի բնավորությունը...

— Մի հանգիստ պատմիր, հանգիստ,— պատանուն իր մոտ նստեցնելով կարգադրեց հրամանատարը։

Միկոլան պատմեց, որ դեռ անցյալ գիշերը գյուղից այն կողմ նահանջած թշնամու զորամասը գյուղի մոտ փոս եկած ու լքված մի գետնափորում թողել է իր հետախույզին։

Մեր հետևակային վաշտն էլ, հարձակումով տարված, ուշադրություն չի դարձրել այն փոսի վրա և գրոհով հասել է գյուղի ծայրամասին։ Հենց որ դիրքերը գրավելուց հետո ուզեցել են հանգստ-

տանալ, մի չտեսնված կրակ է թափվել նրանց վրա։

Նրանց հետևից հասած մեր առաջին մարտկոցն էլ նույն վիճակի մեջ է ընկել։ Նրանք էլ չեն մտա-



...Նա հանել էր ֆիննական դանակը...

ծել, որ այդտեղ կարող է մարդ լինել. ռադիստը, նստած անուշադրության մատնված այդ խորշում, իրենց հրետանուն և ականանետներին հաղորդել է մերոնց դասավորության ճիշտ տեղը։

Դավիթն ու Միկոլան էլ բավականին փնտրելուց հետո ուզեցել են անցնել փոսի մոտով։ Բայց Միկոլայի հիանալի լսողությունը որսացել է հաղորդիչ բանալիի ծանոթ տկտկոցը։ Պատանին քաշել է Դավթի թևը և անխոս ցույց տվել գետնափորը։ Դավիթը զարմացած նայել է պատանուն, ապա մուտքի մոտից դուրս ցցված անտեննայի գրեթե աննկատելի ծայրին ու ավտոմատը պատրաստ բռնած մոտեցել փոսին։

Թշնամու հետախույզն արդեն լսել էր նրանց ոտնաձայնը և հենց որ Դավիթը ճյուղերով ծածկված մուտքը բաց է արել, որ իջնի գետնափորը, կրակահերթով սպանել է նրան։ Միկոլան մենակ է մնացել, բայց իրեն չի կորցրել։

— Ձեռքերդ վե՛ր, թե չէ կսատկացնեմ,— մի քանի անգամ գոռացել է նա և ավտոմատը պատրաստ պահել։

Թշնամին կարծել է, թե ամբողջ մի ջոկ է իր վրա եկել, սարսափած գցել է ավտոմատը և ձեռքերը բարձրացրել. բայց հենց որ Միկոլան իջել է փոսը, նա հանել է ֆիննական դանակը և հարձակվել պատանու վրա։

Մինչ այդ հետևակային վաշտից մի երկու զինվոր լսելով Միկոլայի ձայնը, մոտեցել էին փոսին։ Երբ սկսվում է խիզախ պատանու և հիտլերականի քաշքշուկը, նրանք վրա են պրծնում և բաժանում են նրանց։ Ապա կապկպում են ռադիստի ձեռքերն ու բերանը, ռադիո-ապարատը շալակը տալիս և ճանապարհ դնում։ Վաշտի հրամանատարը զինվորներից մեկին հրամայում է Միկոլայի հետ միասին տեղ հասցնել «որսը» և վերադառնալ։

— Ես չեմ հիշում, թե քանի րոպե էր տևել այդ բոլորը,— եզրափակեց գնդապետը,— բայց մենք շնորհակալություն հայտնեցինք պատանի հերոսին և հետո շքանշանով պարգևատրեցինք։ Չէ՞ որ նա և իր ընկերը մի ամբողջ զորամաս փրկեցին սպանիչ կրակից։

***

Գնդապետը լռեց։ Տղաները խորը հառաչեցին և հուզված նայեցին միմյանց։ Շատ լավ էր, որ ջոկատավարը կատարել էր իրենց ցանկությունը և լույսը հանգցրել. բայց հիմա ի՞նչ է լինելու։ Սեղրակյանը լույսը վառեց։ Կարծես դա մի ազդանշան էր, որ ծափերը որոտան։ Ջավենն արագ քայլերով մոտեցավ սեղանին ու հերոսին տվեց ամենից փարթամ ու վառվռուն ծաղկեփունջը։ Հերոսը սեղմեց նրա ձեռքը, ապա ինքն էլ ծափահարեց, բայց չնստեց։

— Միկոլային ես անցյալ տարի հանդիպեցի Վոլգա-Դոն ջրանցքի շլյուզներից մեկում։ Մի գեղեցիկ ջերմանավի ավագ ռադիստն է։ Գերազանց դիպլոմով է ավարտել ուսումնարանը։ Հիմա էլ սովորում է հեռակա ինստիտուտում։ Իսկ դուք հերոսներ ունե՞ք,— հանկարծ հարցրեց գնդապետը։

Մի քանիսը զարմացած նայեցին նրան։ Նրանց աչքերում կարելի էր կարդալ՝ «Դպրոցում ի՞նչ հերոսություն»։ Ոմանք էլ երևի կարծեցին, թե գնդապետը ծաղրելու համար «փողոցային» կեղծ հերոսությունն է ակնարկում և ծիծաղելով ծոր տվին.

— Ո՜չ...

— Է՜, լավ չի, լավ չի։ Ինչ է, միայն կռվի դաշտո՞ւմ կարելի է հերոսություն անել... Իսկ ինձ ասացին, որ Վահագնը միշտ գովասանագրով է փոխադրվում. հետո՝ մի քանի աշակերտ էլ կան, որ

*4 և 5 են ստանում... Օրինակ՝ «պրոֆեսոր» Զավենը,— ծիծաղեց գնդապետը։— Իսկական հերոսությունը դպրոցում հենց դա է, որ կա...*

*Թնդացին ծափերը։*

*Դրանից հետո ջոկատի պիոներները պատմեցին իրենց ուսման ու աշխատանքի մասին, իրենց ցանկությունների ու երազանքների մասին։ Հերոսը շատ ու շատ հուզող հարցերի պատասխանեց։*

*— Պատմեցեք ձեր գործարանի մասին,— խնդրեց Սահականուշը։*

*— Այդ մեկը չեմ կարող անել,— խորհրդավոր ժպտաց հյուրը և նայեց զարմացած երեխաներին,— ինչո՞ւ պատմեմ... Համեցեք մեզ մոտ ու ինքներդ ձեր աչքերով տեսեք։ Այդպես ավելի լավ կլինի...*

*Հավանության ծիծաղը մեղմ հովի պես անցավ նստարաններով ու հանգավ վերջին շարքերում...*

# ԴԱՀՈՒԿԱՎՈՐՆԵՐԸ

*Ս. ԽԱՐԱՋՅԱՆ* — *Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*



Մրցումն է պահում վառ կրակի պես,
Դուրգենի դեմքից քրտինք է հոսում,
Սամվելի ձեռքերն այրվում են ասես:
Ասես ձմեռը բոլորի հոգում
Կրակ է վառել ձյունեղեն բոցով.
Եվ ծեր անտառն է նրանց թիկունքում
Կանգնել հողմի դեմ ներմակ թիկնոցով:
Ծանր սահում է արևը ժպտուն
Ու տուն են դառնում տղերքը ձյունոտ,
Մի ճամփա թողած մեր գյուղի հանդում,
Սարի կատարից մինչև ստորոտ:



Ձյունը երեսն է ծածկել մայր հողի,
Ծածկել արտերը, արոտները բաց.
Գործի են անցնում տղերքը գյուղի՝
Իրենց ձմեռվա խաղին կարոտած:
Ուրախ աղմուկով խաղում են, ցնծում,
Սահում խաղավայր մերկ անտառի մոտ,
Եվ դահուկներով ճամփա են գծում
Սարի կատարից մինչև ստորոտ:
Ձմռան արևից փայլում է հեռուն
Ու ձյունով ժպտում խորին լռությամբ,
Դահուկների տակ ձյունն է ճռռում,
Եվ նրանց տալիս նոր եռանդ ու թափ:
Հովհաննեսն ընկավ, նստեց ձյան վրա,
Դահուկներն արագ սահեցին ներքև,
Խումբը ծիծաղեց, կանգ առավ մի պահ,—
Մեկը ձայն տվեց՝ ինչո՞ւ չես կապել...
Ցուրտ է, պաղ քամի, բայց ո՞վ է մրսում,



# ԴԵՌ ԿԿՌՎԵՆՔ

Լ. ՈՒՍՊԵՆՍԿԻ Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ

*Սպիտակների դեմ մղվող պատերազմը մոտենում էր իր վախճանին։ Սովետական երկիրը բնաջնջում էր իր վերջին թշնամիներից մեկին՝ բարոն Վրանգելին։ Բուդյոննովյան Առաջին հեծյալ բանակի ջոկատները հետապնդելով հակառակորդին՝ գրավեցին Օտրադա գյուղը։ Թշնամին նահանջեց։ Առավոտյան հեծելազորի հրամանատարները Վորոշիլովի և Բուդյոննու գլխավորությամբ հավաքվեցին գյուղական խրճիթներից մեկում՝ քննարկելու գործերի ընթացքը։*

*Հանկարծ դրսից լսվեցին աղաղակներ, հրացանի կրակոցներ, դոփյուն... Բոլորը դուրս վազեցին։ Գլխավոր լայն փողոցը դատարկ էր։ Միայն գյուղի ծայրամասում ձիավորներ էին նշմարվում։ Սպիտակ հեծյալները հանկարծակի ճեղքել էին մեր զորքերի ճակատային գիծը և առաջ անցել։ Սակայն որքա՞ն էին նրանք, բոլո՞րն էին այնտեղ, թե՞ գյուղից դուրս նրանց էին սպասում ուրիշները. դա ոչ ոքի հայտնի չէր։ Կարմիրները քիչ էին՝ երկու թե երեք տասնյակ մարդ։ Բուդյոննին թամբեց իր ձին և մի խումբ մարդկանց հետ գնաց հետախուզության։ Նա գլխավոր փողոցով չգնաց. շրջանցեց բակերն ու բանջարանոցները։ Ռևոլյուցիոն Ռազմական Խորհրդի անդամ Վորոշիլովը նույնպես շտաբում չմնաց։ Մենակ, առանց թիկնապահների, նա ձին քշեց գյուղի միջով ուղիղ այնտեղ, որտեղ հրաձգություն էր տեղի ունենում։*

*Եվ հանկարծ ճանապարհի կեսին նրան դեմ դուրս եկան մի խումբ ձիավորներ։ Վորոշիլովը մտածեց՝ գուցե Բուդյոննին է։ Ո՛չ, սպիտակներն են, վրանգելականները։ Անմիջապես հնարավոր չէր ձին կանգնեցնել. Վորոշիլովն ուժեղ թափով առաջ նետվեց ու խորացավ թշնամու դիրքերը։ Նա հանեց ձեռնոցը և ուզում էր դուրս քաշել ատրճանակը, բայց ուշ էր. իր կողքին արդեն տեսնում էր դուրս ընկած աչքերով ու ցցված ատամներով վրանգելականի դեմքը։ Նիզակը ձեռքին նա նետվեց Վորոշիլովի վրա։*

*Վորոշիլովն իսկույն աջ ձեռքը տարավ ատրճանակին, իսկ ձախով՝ քաշեց ձիու սանձը։ Նրա մարտական նժույգը հասկացավ հրամանը և թշնամուն դիմավորեց ատամներով ու սմբակներով. թույլ չտվեց, որ խփեն իր տիրոջը։*

*Բայց վրանգելականի նիզակն ամբողջ թափով ծակեց Վորոշիլովի լայն յափնջին և մարմնից մազաչափ հեռավորության վրա խճճվեց ծալքերի մեջ։*

*Երկու ձիերն արնակալած աչքերով պտտվում էին տեղում և զայրույթից խրխնջում։ Վրանգելականի այլայլված դեմքը մոտ էր։ Նա խռպոտ ձայնով գոռում էր, մրթմրթում և ցանկանում էր յափնջու միջից հանել նիզակը։ Վորոշիլովը դուրս քաշեց ատրճանակը և բարձրացրեց ձեռքը։ Այդ պահին բարձր «ուռաներ» լսվեցին։ Նրբանցքներից փողոց դուրս թռան բուդյոննովյան զինվորները։*

*Մի քիչ հետո սպիտակների հետքն անգամ չկար։ Տաքացած մարտիկները ծանր շնչելով ընկան նրանց հետևից։ Մնացածները խիտ օղակելով շրջապատեցին իրենց հրամանատարին։ Տասնյակ ձեռքեր մեկնվեցին դեպի նա։ Մարտիկները շտապում էին իմանալու համար, թե արդյո՞ք չի վիրավորվել իրենց հրամանատարը։ Ո՛չ, վիրավորված չէ. ողջ և առողջ է։ Տասնյակ աչքեր ուրախությամբ լի նայում էին Վորոշիլովին։*

*— Ինչպե՞ս եք, Կլիմենտ Եփրեմովիչ։*

*Վորոշիլովը յափնջու ծալքերից դժվարությամբ հանեց թշնամու նիզակը, ՝սրբեց ճակատի քրտինքը և ժպտալով ասաց.*

*— Ոչինչ, ոչինչ, տղանե՛ր, հանգիստ եղեք, մենք դեռ կկռվե՜նք...*




Հ. ՀԱՐՅԱՆ

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

1

Կեսօրվա թեժ, հեղձուկ տապին,
Թողած գյուղը ժեռ քարափին,
Թողած հանդերն հրատոչոր,
Տղերքն էլի իջել են ձոր,
Ու լողում են, խաղում, ճչում
Ալիքների մեջ պաղպաջուն:
Աղաղակով ու ծիծաղով
Գոռտալող է տալիս Վաղոն,
Իսկ Հարբերը՝ խենթ ու խելառ
Սլանում է հոսանքն ի վար:
Սլանում է, սկում, կորչում
Նորից ճիչով գետափ թռչում...
Պերճն ավել է քաղում ափին,
Որ տանի տուն՝ նստի, կապի...
Հենց այդ պահին, ծանր ու հանդարտ,
Հենվելով իր ձեռնափայտին,
Ձորի գլխից իջավ մի մարդ
Ու կանգ առավ ջրի ափին:
Ծխում էր նա, նայում դես-դեն,
Հարց ու փորձ էր անում Պերճին:
Իսկ տղերքը մինչ այդ արդեն
Գետափ ելան, հագնվեցին:
Հետո այդ կաղ, օտար քեռին
Հարց էր տալիս տղաներին,
Հարցնում էր հազար մի բան.
Ուր է տանում այս նեղ ճամփան,
Այդ ինչ գյուղ է այն սարի տակ,
Ինչքան կա դեռ մինչև քաղաք...
— Ինքս էլ,— ասաց,— շատ եմ սիրում
Շրջել էստեղ՝ էս սարերում,
Իսկ կեսօրվա շոգին, տապին՝
Հանգստանալ զով գետափին:
— Դե, տղե՛րք ջան, կանգնեք էսպես,
Պիտի խմբով նկարեմ ձեզ,
Որ ես ինձ հետ տանեմ քաղաք
Մի անմոռաց, լավ հիշատակ:
Եվ Հարբերը ձգվեց հպարտ,
Գրկեց երկու ընկերներին.

Ու քարացան տղերքն անբարբ՝
Արձանի պես համր ու լռին:
— Հիմա արդեն, ելնենք ձորափ.
Մեկ էլ պիտի նկարեմ դեռ,—
Ասաց քեռին, ու հապշտապ
Մագլցեցին տղերքը մեր:
Այստեղ՝ շուրջը մինչև հեռուն
Ծով արտեր են կոհակ-կոհակ.
Այստեղից գյուղն է երևում
Օձասարի փեշերի տակ:
— Տղե՛րք,— ասաց, ժպտաց քեռին,—
Եկեք անեմ ես մի հնար,
Որ ով նայի էս նկարին
Ծիծաղելուց ուշքը գնա:
Դու, փոքրի՛կս,— դիմեց Պերճին,—
Չորեքթաթիկ կանես հիմա,
Որ իբրև թե բլրի լանջին
Արածում ես գառան նման:
Իսկ դու մի փունջ խոտ կքաղես,
Կծամծմես ոնց որ ագահ,
Սա էլ՝ ընկած փշերի մեջ,
Հոնգուր-հոնգուր թող հեկեկա:
Ասաց քեռին, ու խոտերում
Ծունկի իջան տղերքն արագ:
...Իսկ հեռվում գյուղն էր երևում
Օձասարի փեշերի տակ:
— Մնաք բարով,— ասաց քեռին
Ու երեքի ձեռքն էլ սեղմեց,—
Իսկ նկարն իմ բալիկների
Փոստով մի օր կուղարկեմ ես:
Եվ կաղալով իջավ գետափ,
Անհետացավ մացառներում:
Ապշել էին տղերքն անչափ
Արարքներից օտար քեռու:
— Մազալու էր, կյանքս վկա,—
Մտմտում է Պերճիկն անվերջ:
Հարբերը՝ թե.— Հը՞մ, կա-չկա
Ձեռք էր առնում բիձուկը մեզ:
— Գրազ կգամ,— ասաց Վաղոն,—
Թե ծուռ մի բան չկար մտքում:

Ա՛յ, ուզո՞ւմ եք, մեզ զցենք ձոր
Ու հետևենք նրան թաքուն:



2

Արևն ասես բոց է թափում,
Ու թվում է ճամփան անծայր,
Ջորն էլ ի՜նչ ձոր՝ սատանի բուն,
Մինչև վիզդ փուշ ու մացառ:
Ու քայլում են մերթ անձայնուն,
Մերթ էլ խոսում, վիճում ինչ-որ,
Հազար ու մի բան մտածում՝
Մեկը մեկից խորհրդավոր:
Մեկ էլ, բնը, այդ կաղ քեռին
Գնաց մտավ մի մութ քարայր:
Ու պահ մտան նրանք լռին,
Սպասելով տագնապահար:
Եվ նայում են, պահվում էլի,
Ծիկրակում են նրանք մեկ-մեկ,
Բայց չէ, չկա էն կաղ քեռին
Ասես կորավ, գնաց անհետ:
— Դու պուճուր ես, դո՛ւ, մտիր, Պե՛րճ,
Քեզ որ բռնի, բան չի անի:
— Չէ, Վաղո՛ ջան, ճասկացա քեզ,
Աղվեսություն մի բանեցնի:
— Բայց երկուսդ էլ Նազար եք հա՜,—
Ասաց Հաբեթը զայրալից,—
Տղամարդը տեսեք անա
Ոնց է գնում ու ետ գալիս...

3

Հենց որ դռնից մութ քարայրի
Տղան ոտքը ներս չդրե՜ց,
Թվաց՝ վիշապ մի վիթխարի
Քաշեց նրան երախն իր մեծ:
Նա սարսափած ետ-ետ եկավ,
Կանգնեց դրսում ամոթահար:
— Հերոս ախպե՛ր, ետ արի, լա՛վ,—
Հեգնեց Վաղոն՝ անզթաբար:
Ու Հաբեթի ճակատը լայն
Ամոթի պաղ քրտինքն օծեց...
Հեյ, վա՜խ, Հաբեթ, էսպիսի բան
Պատահե՞լ է երբևէ քեզ...
Եվ ծաղրի սուր խայթը սրտին,
Սարսափ ու վախ արհամարհած՝
Նետեց իրեն այրը մթին,
Եվ անվարան անցավ առաջ:
Ու գնում է կույրի նման,
Շոշափելով պատը քարոտ,
Գնում է նա, գնում համառ,
Առջևը՝ ահ, հետևն՝ ամոթ:
Իսկ քարայրը խխունջի պես
Գալարվում է հետզհետե:



Մեկ էլ, բնը՛, մի լույս վառվեց:
Հաբեթն անցավ քարի հետև:
Քարից այն կողմ՝ կիսամթում
Մրթմրթում էր ինչ-որ մի բան:
Եվ Հաբեթը, թաքուն-թաքուն
Անթարթ աչքով նայեց նրան:
Տեսավ մի տափ բերնին դրած
Մրթմրթում էր անծանոթը

Եվ քարտեզ կար նրա առաջ,
Ձեռքեր կային դրված մոտը:
Այս որ տեսավ, քաշվեց էլի
Եվ ապշահար կծեց լեզուն:
— Հը՜մ,— շշնջաց անլսելի,—
Այ թե ով ես եղել դու, շո՛ւն:
Էլ չսպասեց: Ձորափն ի վար
Վազեց իջավ նա հևիհև:
— Տղե՛րք,— ասաց տագնապահար,—
Լրտես է նա, հորըս արև:
— Լրտե՞ս, հայ-հա՜յ... էդ էր պակաս,
Էս չոլերում, տո՛, ի՞նչ լրտես,—
Ասաց Վաղոն ու հռհռաց:
Իսկ Պերճն ահից փշաքաղվեց:
Բայց Հաբեթը երբ ամեն բան
Նրանց պատմեց տակից գլուխ,
Վաղոն ասաց.— Դե Պերճի՛կ ջան,
Վեր կաց շտապ քեզ գցիր գյուղ.
Իսկ երկուսըս դրան առաջ
Կրակ անենք և արջածուխ...

4

Ճտճտում է խարույկը թեժ,
Ծուխն է ելնում քուլա-քուլա,
Եվ քարայրի երախը մեծ
Բոցկլտում է ինչպես քուրա:
Իսկ տղերքը կրակի մեջ
Մացառներ են նետում էլի
Ու կատակում.— Բոլ է քնես,
Կեսօր է, հե՜յ, թոփալ քեռի:
Մեկ էլ հանկարծ այրի միջից
Դուրս թռավ նա ծխակոլոլ,
Շուրջը նայեց հոնքի տակից,
Տղաներին անիծելով:
Մինչ կատաղած թքեր-մրեր,
Եվ ամոքեր ցավ ու մրմուռ,
Գետափ հասան տղերքը մեր
Ու վազ տվին շնչակտուր:
Մեկ էլ տեսան՝ ահա մի շուն.
Ու կանգ առան նրանք իսկույն:
Շունը իրեն առաջ նետեց,
Տղաներին լավ հոտոտեց,
Հոտոտեց ու իսկույն ևեթ
Թռավ դեպի քարայրը խոր.
Հենց այդ պահին Պերճիկի հետ
Վրա հասան երկու զինվոր:

***

Այդ երեկո գյուղի մարդիկ՝
Մեծ ու պուճուր եկան ակումբ,
Եկավ պետը զորամասի,
Ու զինվորներ եկան խումբ-խումբ:
Լցվեց դահլիճն ինչպես փեթակ,
Թնդաց զվարթ ու ցնծագին.
Եվ ծափերի տարափի տակ
Բեմ հանեցին մեր տղերքին:
Ծեր գնդապետն եկավ առաջ,
Երեքին էլ ամուր գրկեց,
Եվ սրտագին խոսքեր ասաց
Ու նվերներ տվեց պես-պես:
— Իբրև զինվոր՝ ազնիվ, շիտակ,—
Ասաց վերջում գնդապետը,—
Բարձրանում են պատվո տախտակ
Վաղոն, Պերճիկն ու Հաբեթը...

# [illegible] ԲԱՐԵԿԱՄԸ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ



*Տրամվայը մոտեցավ կանգառին։ Հավաքված մարդիկ իսկույն բարձրացան ու տեղավորվեցին վագոններում։*

*— Մայրի՛կ, ա՛յ, այն տղան մեր դասարանցի Մելիքն է,— ցույց տալով վերջում կանգնած երկու տղաներից մեկին, ասաց Մանուշը։*

*Մայրը նայեց տղային։*

*— Խելոք տղա է երևում։*

*— Այո, մայրի՛կ, շատ համեստ է, կարգապահ, լավ սովորող...*

*Մանուշը դեռ էլի ինչ-որ բաներ էր ասում, երբ տոմսավաճառը մոտեցավ տղաներին։*

*— Տոմսակ վերցրեք։*

*— Երեկ վերցրել ենք,— ծիծաղելով ասաց Մելիքի կողքին կանգնած տղան։*

*— Էհ՜, կատակներ չեմ սիրում,— ասաց տարեց տոմսավաճառը՝ չհեռանալով նրանց մոտից։—*



— Տոմսակ վերցրեք:

Ձեզ հետ չէ՞մ, տոմսակ վերցրեք,— պահանջեց նա։

Տղաները շարունակում էին քրքջալ, իրար հրել, կատակներ անել, որը դուր չէր գալիս ո՛չ տոմսավաճառին, ոչ էլ ուղևորներին։

— Դրանք մշտական տոմսեր ունեն,— հեգնեց ուղևորներից մեկը,— չեն էլ ամաչում...

— Պետք է դրանց միլիցիային ներկայացնել։ Հետաքրքիր է՝ ո՞ր դպրոցում են սովորում։

— Պա՛հ, վախեցնում եք էլի... խնայեցե՛ք մեզ,— նորից ծիծաղելով ասացին նրանք ու իրար հետևից ցած թռան տրամվայի ընթացքի ժամանակ։

Մանուշը նայում էր պատուհանից դուրս. «Մի՞թե Մելիքն էր», մտքում ասում էր նա։

Տրամվայը կանգնեց։ Էլեկտրական լույսերով ողողված փողոցով քայլում էին այն տղաները։ Մանուշը տեսավ նրանց։ «Այո, իհարկե, Մելիքն է, իսկ մյուսը՝ իններորդ դասարանցի Շավարշը...»։

Շավարշը գրպանից հանեց ծխախոտի տուփն ու մի գլանակ տվեց Մելիքին։ Նրանք ծխելով քայլեցին փողոցի մեջտեղով։

Տրամվայը շարժվեց։ Մայրը նայեց Մանուշին, որը հայացքն այս ու այն կողմ էր դարձնում. չգիտեր, թե որ կողմը նայեր։ Զգում էր, որ մայրը հարցնելու է Մելիքի մասին։

— Մանո՛ւշ, երևի դու չճանաչեցիր այդ տղային։

Մանուշը երբեք սուտ չէր խոսել և չցանկացավ մորը խաբել։

— Ոչ, ճանաչեցի, մայրի՛կ, նա էր՝ Մելիքը,— տխուր ասաց Մանուշը։

— Բայց... այդ տղան...— մայրը չցանկացավ շարունակել։

— Ես էլ զարմացա, մայրի՛կ, նա դպրոցում շատ լավ է պահում իրեն։

— Չգիտեմ, բան չեմ հասկանում, դպրոցում սովորած կարգ ու կանոնը ամեն տեղ պիտի երևա և ոչ թե... Եթե դա է դասարանի համեստ տղան, հապա ինչպիսի՞ն են մյուսները,— տխուր ասաց մայրը։

***

Մելիքը տուն գնաց շատ ուշ։ Հայրը գրքերով ծանրաբեռնված սեղանին հակված թարգմանություններ էր անում, իսկ մայրը բազմոցի վրա նստած թերթ էր կարդում։

— Ինչո՞ւ ուշացար,— հարցրեց մայրը տղային ընդառաջ գնալով։

— Ժամը յոթի համար տոմս չկարողացանք գնել...

— Ո՞ւմ հետ էիր կինո գնացել,— գլուխը բարձրացնելով հարցրեց Թորգոմը։

— Շավարշի,— կարճ պատասխանեց Մելիքը։

— Լավ կլինի, որ դու Շավարշի հետ ընկերություն չանես, նա լավ բան չի կարող սովորեցնել քեզ...

— Ինչո՞ւ,— զարմացավ Մելիքը,— նա ընկերոջ համար գլուխը կտա...

— Գիտեմ, փողոցային մարտերում նա առաջին տեղն է բռնում,— ասաց հայրը։

Մելիքը լռեց։ Ուրեմն հայրը ճանաչում էր Շավարշին։

Ծնողները միմյանց նայեցին։ Մայրն ուզում էր ասել. «Բոլոր առարկաներից հինգ է ստանում, էլ ինչ ես ուզում...», բայց Թորգոմը գիտեր, որ իր տղան գնահատականները աշխատանքով ձեռք չէր բերում։ Մելիքն ընդունակ էր. հենց դասարանում էլ սովորում էր դասերը և տանը շատ քիչ էր զբաղ-

վում դրանցով։ Իսկ Թորգոմն զգում էր, որ իր տղան ծույլ է։ Հայրը շատ բարձր էր գնահատում մարդու աշխատասիրությունը, աշխատանքով ձեռք բերածը։

— Լսիր, Մելի՛ք, ինչո՞ւ վերջերս Կարենն ու աղջիկները մեզ մոտ չեն գալիս, ինչո՞ւ նրանց հետ չես պատրաստում դասերդ։ Ինչպե՞ս էր այն աղջկա անունը, որը վերջերս է ընդունվել ձեր դասարանը։

— Մանուշ,— հազիվ լսելի ձայնով պատասխանեց Մելիքը։

— Այսօր դասերից հետո, նրա՛ն էլ ասա, թող մեր տուն գա։

***

Առավոտյան Մելիքն ուշ արթնացավ։ Նա հազիվ հասցրեց լվացվել, մազերը սանրել, և երկու գիրք թևի տակը դնելով, դուրս եկավ տնից։ Նա գլխաբաց էր, բայց ցուրտ չէր զգում։ Քայլում էր՝ շուրջը տարածելով կոշիկների ճռճռոցը։ Դա այնքան էր դուր գալիս իրեն, որ ինքնագոհ ժպտում էր ու ավելի հպարտ կեցվածք ընդունում։

Մելիքը դեռ հեռվից ճանաչեց իր նախկին ուսուցչուհուն և արագացրեց քայլերը։ Հասնելով նրան, քաղաքավարությամբ բարևեց, ապա ներողություն խնդրեց ու նրա ձեռքից վերցրեց տետրերով լի պայուսակը։ Ալեզարդ ուսուցչուհին հիացմունքով նայեց Մելիքին։

— Ինչպե՞ս է հայրիկիդ առողջությունը։

— Հիմա լավ է, կարողանում է քայլել։ Բժիշկներն ուզում են ոտքի միջից հանել ռումբի բեկորը, բայց հայրիկը վախենում է, չէ՞ որ դա նրա միակ ոտքն է...

— Գիտեմ, գիտեմ և ինչպես եմ ցավում։ Քո հայրը հիանալի մարդ է, ես նրան լավ եմ ճանաչում, մենք միասին ենք սովորել...

Նրանք արդեն հասել էին դըպրոց։ Ուսուցչանոցի դռան առաջ Մելիքը պայուսակը տվեց տիրոջն ու ցտեսություն ասելով, հեռացավ։

Դասարանում բոլորը շնորհավորեցին Մելիքի նոր շորերը, միայն Մանուշը ոչինչ չասաց, նայեց նրան ու անտարբեր անցավ...

Մեծ դասամիջոցին Մելիքը դասարան մտավ և սկսեց ընկերներին շոկոլադ բաժանել։



Մելիքը լուռ լսում էր ընկերուհու կշտամբանքը։

— Ապրես, Մելի՛ք, ամեն օր նոր շոր հագնես, որ մեզ համար շոկոլադ գնես,— կատակում էին այս ու այն կողմից և Մելիքի ձեռքից թռցնում շոկոլադները։

Մանուշը նստած տեղից չշարժվեց։ Մելիքը մոտեցավ նրան։

— Վերցրու, Մանո՛ւշ։

— Չեմ ուզում։

— Ինչո՞ւ,— զարմացավ Մելիքը։— Այսօր դու մի տեսակ ես երևում, ի՞նչ է պատահել. ոնց որ նեղացած լինես ինձանից։

— Այո, շատ եմ նեղացած,— ասաց Մանուշը։

— Դե ասա, ի՞նչ է պատահել,— նրա կողքին նստելով հարցրեց Մելիքը։— Չէ՞ որ ես քեզ ոչ մի վատ բան չեմ ասել...

— Կարծո՞ւմ ես... իսկ ես քո փոխարեն ամաչեցի մայրիկիս մոտ։

— Ինչո՞ւ։

— Ինչո՛ւ...— նրա աչքերի մեջ նայելով կըրկնեց Մանուշը,— երեկոյան դու մեզ չնկատեցիր, ես ու մայրիկը տրամվայի մեջ էինք։ Դու այսօր շոկոլադ ես գնել և հյուրասիրում ես մեզ, իսկ երեկ երեսուն կոպեկ չունեիր տոմսակ գնելու համար... Եվ ի՞նչ ձևով էիր խոսում տոմսավաճառի հետ, հետո էլ ցած թռաք վագոնից ու ծխելով քայլեցիք փողոցի մեջտեղով...

Մելիքը լուռ լսում էր ընկերուհու կշտամբանքը։ Ճիշտ էր ասում Մանուշը։ Ի՞նչ գործ ուներ ինքը Շավարշի հետ. չէ՞ որ դպրոցում բոլորը դժգոհ են նրանից, ինչո՞ւ նրա հետ կինո գնաց։

Նրա աչքի առաջ կանգնեց Շավարշը։ «Մխի՛ր,

ծխի՛ր, տղամարդը պետք է ծխել իմանա... Ամոթ չի՞ տրամվայում տոմսակ գնենք, կամ երեխաների հետ ցերեկով կինո գնանք...», հիշում էր նա Շավարշի խոսքերը...

Զանգը տվեց: Մելիքը գլխիկոր, ինքն իրենից ամաչելով, գնաց նստեց իր տեղը:

Ամբողջ դասի ընթացքում նա միայն մի բան էր մտածում՝ տեսնես Մանուշն էլ ո՞ւմ է պատմել այդ դեպքի մասին: Եվ հանկարծ հիշեց հոր պատվերը՝ ընկերներին իրենց տուն պետք է հրավիրել: «Իսկ եթե Մանուշը հայրիկիս ասի՞... հետո ուսուցիչների ականջն ընկնի»: Նրա սիրտն սկսեց դողալ...

Դասերից հետո, երբ Մանուշը բաժանվեց ընկերուհիներից, Մելիքը մոտեցավ նրան:

— Մանո՛ւշ, մի բան պիտի խնդրեմ:

— Ասա՛:

— Պիտի խնդրեմ, որ ոչ ոքի չասես...

— Դա ի՞նչ նշանակություն ունի, բոլորն էլ կարող են քեզ այդպես տեսնել:

— Ո՛չ, Մանո՛ւշ, դա առաջին դեպքն էր և վերջինը կլինի: Դու չես կարող պատկերացնել, թե ինչպիսի վիշտ կլինի հայրիկիս համար, եթե նա լսի...

Ապա նա գլուխը բարձրացրեց, նայեց ընկերուհուն ու շարունակեց.

— Մանո՛ւշ, այսօր Քնարիկի հետ եկեք մեր տուն:

Մանուշն ուզում էր հրաժարվել, բայց Մելիքը խնդրեց.

— Անպայմա՜ն, անպայման եկեք, հայրիկս հարցնում էր... Կարենն էլ կգա, միասին դաս կպատրաստենք:

— Լավ,— կամաց ասաց Մանուշն ու արագ հեռացավ:

— Մանո՛ւշ, Մանո՛ւշ, նրա հետևից վազելով կանչեց Մելիքը,— խնդրում եմ հայրիկիս ոչինչ չասես... ես Շավարշի հետ այլևս ոչ մի տեղ չեմ գնա:

Մանուշը ծիծաղեց:

Մելիքը թեթևացած շունչ քաշեց և քայլերն ուղղեց դեպի տուն:

## ՓԱՅՏԱՀԱՏԻ ԵՐԳԸ

*ՍԱՐՄԵՆ*

Ձյուն է գալիս մեր սարերում,
Սառույցի տակ լռեց առուն,
Կածանները մուժում կորած՝
Գալարվում են դեպի հեռուն:
Արջն իր բնում մտել է քուն,
Էլ հավքերը չեն աղմկում,
Անդորրություն է չորս բոլո՛ր,
Առավոտից մինչ իրիկուն:
Ճերմակել է անտառն անծայր,
Համրացել են թե՛ թուփ, թե՛ ծառ,

Թվում է, թե աշխարհն արար
Միտք է անում խոր ու անձայն:
Բայց մի երգ եմ լսում հանկարծ
Ձյուների մեջ համատարած,
Դյութված նրա հնչյուններով՝
Կանգնում եմ ես՝ ուշքըս լարած:
Փայտահատն է երգում ձորում,
Շուրջը՝ ձմեռ, սրտում՝ գարուն...
Ու լցվում են կյանքի բույրով
Դաշտ ու անտառ, ձոր և առու...

# ՓՈՔՐԻԿ ՄԱՐՏԻԿԸ

(Կրճատված)

ԻՐԺԻ ՄԱՐԵԿ
(Չեխ գրող)

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Երեկ լրացավ իմ տասնյոթ տարին, իսկ այսօր ես արդեն գործարանային դպրոցի ավարտական քննություն եմ տալիս։

Մենք նստած ենք ընդարձակ դահլիճում։ Դա մեր ճաշարանն է, որ ժամանակավորապես դարձել է քննությունների սրահ։ Ամեն մեկս գրավել ենք մի սեղան։ Դահլիճով անցնում է հրահանգիչը բաժանելով հարցաթերթերը։ Տղաներից մի քանիսն արդեն գրում են. լսվում է նրանց գրիչների ճռճռոցը։ Հրահանգիչն ահա ինձ է մոտենում։ Նա հանդիսավորությամբ մեկնում է հարցաթերթիկն ու սպասում։ Կարդում եմ՝ «Ինչո՞ւ ես ընտրեցի այս մասնագիտությունը»։ Ես գլխով արեցի, որ հասկացա։ Դե, իհարկե, գրելու բան շատ կա. բայց եթե ամեն ինչ գրեմ, ինչ որ կա, գուցե շատ հասարակ թվա։

...Այն ժամանակ ես ինը տարեկան էի. իմ տարիքին էր նաև Ջենեկը՝ Սեկերի որդին։ Սեկերներն ապրում էին մեր հարևան տանը։ Ես հպարտանում էի Ջենեկի ընկերությամբ, որովհետև նա մի ամբողջ գլխով ինձանից բարձր էր, չնայած որ մենք նույն տարիքին էինք։

Ես սիրում էի հորեղբայր Սեկերին։ Նա մի խիստ, քչախոս և մի քիչ դանդաղկոտ մարդ էր և մոլեռանդ ծխող։ Սեկեր հորեղբայրն ամենից շատ սիրում էր խոսել գործարանի և իր հաստոցի մասին։

— Ես պետք է սովորեմ և խառատ դառնամ,— մի անգամ ասաց Ջենեկը։

Ես էլ, իհարկե, իսկույն ցանկություն հայտնեցի։

— Բայց ես քեզանից ավելի արագ կաշխատեմ,— ծիծաղեց Ջենեկը,— հայրիկս ինձ կսովորեցնի։

— Նա ինձ էլ կսովորեցնի,— պնդեցի ես.— այնպես չէ՞, Սեկեր հորեղբայր, դուք կվերցնեք ձեզ մոտ աշակերտ։

— Երկուսիդ էլ, երկուսիդ էլ՝ կսովորեցնեմ,— ասաց Սեկեր հորեղբայրը։ Նա անսպասելի ընդհատեց ծիծաղը, և նրա ճակատը ծածկվեց մանր կնճիռներով,— միայն պատերազմից հետո։

Նա հեռացավ, իսկ ես ու Ջենեկն սկսեցինք ապագայի մասին ծրագրեր կազմել։ Ես համաձայնեցի, որ Ջենեկն ավելի լավ խառատ կդառնա, քան ես, քանի որ նրան ժառանգաբար կանցնի իր հոր հաստոցը, բայց երկրորդն անպայման ես կլինեմ։ Մի անգամ մեր փողոցի տղաների շրջանում խոսք բացվեց գործարանի մասին։

— Իսկ ես բոլորովին էլ գործարան չեմ գնա,— ասաց տղաներից մեկը,— շատ պետք է էլի, որ նացիստների համար աշխատեմ...

— Շատ խելոքն ես երևում,— ասաց Ջենեկը,— երբ մեր սովորելու ժամանակը գա, ոչ մի նացիստ էլ չի լինի։

— Իհարկե, այ հենց քո հայրիկը նրանց համար է աշխատում։

Ջենեկը պատրաստվում էր կռվել, իսկ ես կանգնեցի նրա կողքին, ինչպես պահանջում էր պատվի օրենքը։ Այդ օրը նա այլևս մեզ հետ չխաղաց և շուտ տուն գնաց։ Հետևյալ օրը, ճաշից հետո, ես գնացի Սեկերների մոտ։ Այդ ժամերին էր Սեկեր հորեղբայրը աշխատանքից տուն գալիս։ Ես էլ էի ցանկանում լսել նրա պատմությունները։ Սեկեր հորեղբայրը տանը չէր, իսկ Ջենեկն իսկույն թևիցս բռնեց ու քաշեց դեպի բակ։ Այնտեղ մեր գաղտնարանում, ուր միայն հին տակառներ էին թափված, նա նստեց կոտրված երկանիվ սայլակին և դեմքին խորհրդավոր արտահայտություն տալով, կամաց ասաց.

— Ես հարցրի հայրիկին, և գիտե՞ս նա ինձ ինչ ասաց.— Նա շուրջը նայեց, ստուգելու, թե մեզ արդյո՞ք ոչ ոք չի լսում և շարունակեց.— Նա մի շաբաթ առաջ շարքից հանել է իր հաստոցը։

— Էլ ինչպե՞ս մեզ կսովորեցնի, երբ հաստոցը կոտրված է,— վախեցած ասացի ես։

— Հենց որ ֆաշիստներին քշեն, նա ինքը իսկույն կվերանորոգի, չէ՞ որ նա լավ գիտե, թե ինչ պետք է անել։ Գործարանում շատերն են այդպես վարվում, դե հիմա թող ասեն, թե «նացիստների համար է հայրդ աշխատում»։

— Իսկ ինչո՞ւ նա այդ մասին ոչինչ չէր ասում,— հարցրի ես։

— Այդպիսի բաների մասին ընդհանրապես չեն խոսում. եթե իմանան կկախեն։ Երդվիր, որ կպահես գաղտնիքը,— հրամայեց Ջենեկը՝ լուրջ արտահայտություն տալով դեմքին։

Ես երդվեցի։ Ջենեկն այլևս ոչինչ չասաց։

Որոշ ժամանակ անց, հորեղբայր Սեկերին տեղավորեցին մի այլ հաստոցի մոտ. բայց այդ էլ երկար չտևեց։ Գործարանում ավելի հաճախ սկսեցին փչանալ մեքենաները, և ոչ միայն մեքենաները, այլև մշակվող նյութերը հանկարծ դուրս էին գալիս միանգամայն փչացած, մշակման համար անպետք։ Վերահսկացուները, որ մեզ մոտ «պոլիցայ» էին կոչվում, գժվածի նման դես ու դեն էին վազում գործարանում։ Ջենեկին հայտնի էր ամեն բան, իսկ ես այնպես էի ձևացնում, իբր ոչինչ չգիտեմ։ Ես հավատարիմ էի երդմանս։



...դուրս քաշեց մի ծալած թուղթ...

Մի անգամ Սեկեր հորեղբայրը իր կողմը քաշեց ինձ և ասաց.

— Լսի՛ր, տղա՛ս, դու ինձ դուր ես գալիս. բայց կարո՞ղ ես հավատարիմ մնալ, երբ երդվում ես։

Ես զայրացած եմ նայում Ջենեկին. ուրեմն նա ինձ մատնել է, ասել հորը, որ ես ամեն ինչ գիտեմ։ Սեկեր հորեղբայրը հասկացավ ինձ հետ կատարվածը և ուսս սեղմեց.

— Դե իհարկե, Ջենեկն ինձ ասել է... Ջենեկի հետ կգնաս, գործարանի բակից հին երկաթի կտորներ հավաքելու։

Այդպիսի առաջադրանքի մասին լսելով իմ ոգևորությունն անցավ, և ես հիասթափված ասացի.

— Այդ ի՞նչ առաջադրանք է որ. իսկ ի՞նչ կասեն տղաները։

Սեկեր հորեղբայրը ծիծաղեց։

— Ահա թե ինչպիսի հերոսն ես դու... Երկաթ հավաքելը քեզ համար քիչ է։ Իսկ դու կարծում ես, թե հերոսությունը միայն կրակելու կամ կտուրները մագլցելո՞ւ մեջ է։ Քո կատարած աշխատանքը նույնպես հերոսական կլինի, դու հասկանո՞ւմ ես...

Շաբաթը մի անգամ ես ու Ջենեկը սայլակը քշելով գնում էինք գործարան, մեր թուղթը ցույց էինք տալիս գործարանի մուտքը պահպանող լողլող գերմանացուն, որ միշտ սարսափելի գոռում էր մեզ վրա։ Երրորդ անգամ, գործարան մտնելիս, ես այդ լողլող պահակին պատասխանեցի գերմաներեն։ Մինչ այդ ամբողջ օրը ես անընդհատ կրկնում էի միևնույն դարձվածքը։ Նա ծիծաղեց և այդ օրվանից էլ չէր գոռում մեզ վրա։ Երբ սայլակը լցվում էր, մեզ էր մոտենում մի որևէ բանվոր և սայլակին դնում մի ժանգոտ խողովակ կամ որևէ կոտրված մեքենայի մաս. «Ըհը, երեխանե՛ր, թող լիքը լինի»։ Տուն հասնելով սայլակը կանգնեցնում էինք մեր բակի այն անկյունում, որտեղ թափթփուկներ էինք հավաքում։

Աշնան ամպամած մի օր, մենք սայլակը տուն էինք քշում, երբ փողոցի անկյունում հայտնվեց մեզ ծանոթ մի ակնոցավոր ծերունի։ Նա շուրջը նայեց և արագ մոտեցավ մեզ։

— Կա՞,— կարճ հարցրեց նա Ջենեկին։

Վերջինս գլխով արեց և ցույց տվեց ժանգոտած մի խողովակ, որ դուրս էր ցցվել ծռմռված թիթեղի ու երկաթի կտորտանքի կույտից։

— Թեքվի՛ր այս բակը,— ասաց ծերունին ցույց տալով կողքի տունը,— շո՛ւտ։

Հազիվ էինք կողքի դարբասից թեքվել դեպի կիսամութ բակը, երբ նա վերցրեց դուրս ցցված խողովակը և միջից դուրս քաշեց մի ծալած թուղթ, արագ գրպանը դրեց, իսկ խողովակը նորից գցեց սայլակի վրա։

— Հայտնիր հորդ, որ ստիպված ենք աշխատանքն ընդհատել, մերոնցից երկուսին բանտարկել են։— Հետո արագ շրջվեց ու հեռացավ, նույնիսկ առանց ցտեսություն ասելու։

Այդ օրը մենք սայլակը քշեցինք ուղիղ հնավաճառի մոտ, քանի որ բակում թողնելու կարիք չկար։ Ես սովորականի պես գնացի տղաների հետ խաղալու, իսկ Ջենեկը անհայտացավ. երևի գնաց ստացած հրամանը հաղորդելու իր հորը. գուցե հորեղբայր Սեկերին մեծ վտա՞նգ է սպառնում։ Բայց երբ իր սովորական ժամին հորեղբայր Սեկերը տուն եկավ, իր սովորության համաձայն սիրալիր բարևեց մեզ և պատշգամբում նստած ծխեց։ Ես մտածեցի, որ ոչինչ էլ չի պատահել։ Հետևյալ գիշերը գործարանում հրդեհ բռնկվեց։ Կարմիր հրացոլքը զարհուրելի մթության մեջ ավելի պայծառ էր լուսավորում շրջապատը և ավելի սարսափելի էր թվում։ Ես զարթնեցի և արթնացրի մորս։

— Գործարանն այրվում է,— գոչեցի ես։

— Ոչինչ, մեզնից հեռու է... Դու մի՛ վախենա... քնի՛ր։

Ես քնել չկարողացա, այնպես հուզված էի, որ պատրաստ էի իսկույն վազել հրդեհի վայրը կամ Սեկերների մոտ, բայց մայրս գիշերները կողպում էր դռները։ Ես մնացի տանը և անընդհատ նայում էի կարմիր հրացոլքին։

Հետևյալ օրը դպրոցում բոլորը խոսում էին միայն հրդեհի մասին։ Տղաներից ոմանք նույնիսկ ներկա էին եղել։ Երբ զանգը տվեց, ես նկատեցի, որ Ջենեկը չկա։ Երևի հրդեհի վայրումն է եղել գիշերը, առավոտը քնով է անցել և ուշացել։ Բայց անցավ մի ժամ, և նա դարձյալ չերևաց։ Վախեցա. ես կարգին չէի լսում, թե ինչի մասին էին խոսում դասի ժամանակ։ Դասատուն մի քանի անգամ նկատողություն արեց ինձ... Իսկ եթե այդ հրդեհը... Սեկեր հորեղբայրը... մտքերիս ընթացքն ընդհատեց դասատուի ձայնը։

— Այսօր քեզ ի՞նչ է պատահել։

Ես ոտքի ելա։

— Ներեցեք... ոչինչ... ինձ վատ եմ զգում։

— Ես տեսնում եմ, դու գունատվել ես, տուն գնա։

Տղաներից միքանիսը պատրաստակամություն հայտնեցին ինձ ուղեկցելու, բայց ես հրաժարվեցի։ Անմիջապես պետք է պարզեի, թե ինչ է կատարվում Սեկերների մոտ։ Ես խենթի պես սլանում էի փողոցներով, երբ թեքվեցի մեր փողոցը, ծնկներս ծալվեցին... Սեկերների տան առաջ երկու ավտոմեքենա էր կանգնած։ Ես քայլերս ավելի դանդաղեցրի, որպեսզի տեսնեմ, թե ինչ է կատարվում բակում։ Բայց հենց այդ պահին, երբ արդեն մեքենաների մոտ էի գտնվում, զինվորը վրաս գոռաց.

— Անցիր մյուս մայթը, մի՛ դանդաղիր։

Այժմ արդեն հասկացա, ինչ-որ սարսափելի բան էր կատարվում։ Այստեղից շատ հեռանալու կարիք չկար. ես մտա մոտակա խանութը և զարմացա՝ տեսնելով, որ խանութը լիքն է մարդկանցով։ Նրանց արգելված էր փողոց դուրս գալ։ Իմ ներս մտնելն աննկատելի մնաց, քանի որ բոլորը հուզված խոսում էին։ Այստեղ վերջապես իմացա, թե ինչ է պատահել։

— Նրանք առավոտյան են եկել, շատ վաղ եկան։ Սեկերին գործարանից մեքենայով բերեցին տուն։ Ձեռքերին շղթաներ կային։

— Նրանք ինչ-որ բան էին որոնում։

— Գտել են արդեն, ինչ-որ տպագրական մեքենա է։

...գործարանում հրդեհ բռնկվեց...



— Եվ ում մտքով կանցներ, թե նա այդպիսի գործի ընդունակ կլիներ, այդպիսի մի հանգիստ մարդ։

— Իսկ նա ի՞նչ է արել, մա՞րդ է սպանել, ի՞նչ է։ Պայքարում էր դրանց, այդ ֆաշիստների դեմ։ Չէ՞ որ այս կովին վերջ չկա և բոլորը դրանց մեղքով։

Ես կարողացա մարդկանց հրմշտելով մոտենալ մի ծանոթ կնոջ։ Նա ինձ նայեց ու կամացուկ ասաց.

— Լսիր, տղա՛ս, լավ կլինի, որ դու չերևաս նրանց աչքին, դու Ջենեկի հետ մոտ էիր, իսկ նրանք թույլ չեն տալիս նրան տանից դուրս գալ։ Ասում են նրան այնտեղ ծեծել են։

Ես նստեցի անկյունում դրված տակառի վրա։ Հանկարծ լսվեցին աղաղակներ՝ «Տանում են»։ Զնայած արգելքին, մարդիկ դուրս թափվեցին խանութից։ Ես կարողացա առաջ անցնել և ամեն ինչ տեսա։ Ամենից առաջ տանում էին Հորեղբայր Սեկերին։ Նրա դեմքը գունատ էր և այտերը արյունոտված, ձեռքերին՝ շղթաներ, երկու զինվոր նրան կոպտորեն առաջ էին հրում։ Բացեցին ավտոմեքենաներից մեկի դուռը և Հորեղբայր Սեկերին հրելով ներս գցեցին։ Նրա հետևից գնում էր Ջենեկի մայրը, այդ լռակյաց ու բարի կինը, որին փողոցում հազվագյուտ կարելի էր տեսնել։ Նա մեծ մասամբ տանն էր լինում։ Արդյո՞ք նա տեղյակ էր ամուսնու գործերին։ Նրան նույնպես հրեցին մեքենայի դռնից ներս։ Վերջում գնում էր Ջենեկը։ Նա աշխատում էր դուրս պրծնել զինվորների ձեռքից։ Մինչ կփակվեին մեքենայի դռները, նա շուրջը նայեց և տեսավ խանութի առաջ հավաքված մարդկանց։ Գուցե նա ինձ էլ տեսավ։ Դե, իհարկե, տեսավ։ Մի վայրկյան նա կանգ առավ, ուզում էր ժպտալ։ Հենց այդ պահին նրան հրեցին մեքենայի մեջ։ Ես տեսա, թե ինչպես դեպի նրան տարածվեցին մոր ձեռքերը, ինչպես նա գրկեց ու կրծքին սեղմեց որդուն։ Հետո մեքենաները շարժվեցին։ Մի րոպեից հետո դատարկվեց նաև փողոցը։ Դատարկվեցին պատշգամբն ու տունը, ուր ապրում էին Սեկերները։ Դատարկվեց նաև իմ սիրտը... Ես հազիվ ոտքերս քարշ տվի մինչև տուն, մտա մի անկյուն և դառնորեն լաց եղա։

***

Բոլորը ինչ որ ես պատմեցի կատարվել է տարիներ առաջ, երբ փոքրիկ տղա էի։ Այսօր ես տասնյոթ տարեկան եմ և գործարանային դպրոցի ավարտական քննություն եմ տալիս, նույն այն գործարանի, որի մուտքի մոտ պատին փակցված մարմարե տախտակի վրա բոլոր զոհված հերոսների շարքում գրված են նաև Հորեղբայր Սեկերի, նրա կնոջ ու փոքրիկ Ջենեկի անունները։ Նրանցից ոչ մեկը չվերադարձավ բանտից, նույնիսկ ոչ ոք չգիտե, թե նրանք ինչպես են զոհվել։ Ես միայն մի բան գիտեմ, որ նրանցից ո՛չ մեկը, ոչ մի բառ չի ասել, որ իրենց օգնում էր մի փոքրիկ տղա։

Գործարանում մենք կարող էինք աշխատել երեքով՝ Հորեղբայր Սեկերը, Ջենեկը և ես։ Բայց այժմ մենակ եմ մնացել։ Ես պետք է աշխատեմ երեք մարդու փոխարեն և որակյալ փականագործ դառնամ։ Ահա թե ինչու ես ընտրեցի այս մասնագիտությունը։ Բոլորը գնացել են, մենակ ես եմ գրում...

Ինձ հարցաթերթիկ տվող հրահանգիչն արդեն ժամացույցին է նայում և ապա ժպտալով ասում.

— Ոչինչ, մի՛ շտապիր...— Բայց արդեն ես վերջացրել եմ, մնում է միայն մի քանի տողով գրածս եզրափակել։ Ես չեմ մոռանա, որ իմ աշխատանքով ես հարկ եղած պատիվն եմ տալիս իմ լավ ընկերոջ հիշատակին։

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

# ՔԱՐՏԵԶԸ

Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ



— Տա՛տ, ակնոց դիր ու լավ տես:
Սրան ասում են քարտեզ.
Ամբողջ աշխարհն է վրան:
Չե՞ս զարմանում, տատի ջան:
Տատը ինչպե՞ս չիմանա,
Բայց թոռանն է փորձում նա.
— Զարմանում եմ, իմ պուճուր...
— Սա ցամաք է, իսկ սա՝ ջուր,
Լեռներ, ծովեր իրար կից:
Ջուրը շատ է ցամաքից

Ու թե հանկարծ բարձրանա՞.
— Չէ, իր տեղը թող մնա:
— Դե լավ, նստենք շոգենավ,
Իջնենք դեպի տաք հարավ:
Արդեն հասանք Աֆրիկա.
Սրանից տաք տեղ չկա:
Նեղոսն հորձանք է տալիս,
Կոկորդիլոսն է լալիս:
Կեղծ լաց է, տա՛տ, չխաբվես,
Չմոտենաս, կուտի քեզ:



— Մատա՛ղ, զգույշ կլինեմ,
Օտար տեղ է, ի՞նչ անեմ...
— Տա՛տ, ետ չընկնես, շուտ արա,
Արդեն մտանք Սահարա:
— Այդ ի՞նչ բան է Սահարան:
— Կասեմ, կասեմ, տատի ջան:
Տաք ավազ է ծայրեծայր,
Ո՛չ ծաղիկ կա ու ոչ ծառ,
Անվերջ տոթ է, վառ արև,
Ո՛չ զով քամի, ո՛չ անձրև...
Ահա և քեզ անապատ.
Շալդ հանիր, շոգ է, տա՛տ:
Սահարայից շիկացած
Հիմա ուղիղ իջնենք ցած...



Եկանք, հասանք Հնդկաստան:
Ի՞նչ ընկույզ կա կոկոսյան.
Դդմի չափ է, այսքա՞ն, տա՛տ,
Համն էլ ոնց որ քաղցր կաթ,
Այստեղ կանչում է Ներուն
Ու հարցնում է ինձ իսկույն.
«Վահրա՛մ, լա՞վ ես սովորում»...
Հետո փիղ է նվիրում:
Փիղ նստեցինք, եկանք նավ,
Ամբողջ նավը զարմացավ...
Դարձյալ ծովումն ենք անափ:
Հանկարծ հնչում է տագնապ:

Նավապետը համարձակ
Բարձրանում է կամրջակ,
Թավ հոնքերը կիտելով,
Հեռուները դիտելով,



Նա դեպի մեզ է դառնում.
«Մեզ վտանգ է սպառնում»:
Հարց ենք տալիս. «Ի՞նչ եղավ»:
«Չանկայշիական երեք նավ
Հարձակվում են մեզ վրա:
Պատրաստ եղեք դուք հիմա»:
Թեժ կռիվ է սկսվում:
Էլ ոչ մի խոսք չի լսվում.
Խլանում ենք որոտից,
Սևանում ենք վառոդից...
Ոչ, չենք ընկնի մենք գերի...
Շառաչի տակ արկերի
Ուղարկում ենք հեռագիր
Մաո Ցզե-դունին. «Մեզ փրկիր»:
Օդանավեր են գալիս
Ու կռվին վերջ են տալիս...
Հասնում ենք մենք Սախալին:
— Մատաղ անուշ իմ բալին,
Բա Կորեա չմտնե՞նք:
— Լի Սին Մանի հետ չունենք...
— Հարավն է դա, խելո՛ք ջան,
Հապա ազատ Կորեա՞ն...
Թոռը շատ է զարմանում.
Բայց խոսքն առաջ է տանում.
— Գնանք բևեռ, ցուրտ հյուսիս.
— Կսառեցնես երկուսիս,
Շուտ արա, բեր Հայաստան.
Ճաշը վառվեց, բալա՛ ջան:





# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՎԶԿԱՊ

1929 թվականն էր։ Մոսկվայում տեղի էր ունենում Սովետական Միության պատանի պիոներների Համամիութենական առաջին հավաքը։ «Կարմիր վզկապը, որ կրում եք դուք,— ասաց իր ելույթում Սովետական պետության ականավոր գործիչ Լ. Մ. Կագանովիչը,— ներկված է հարյուր-հազարավոր մարտիկների արյունով։ Հազարավոր մարտիկներ կախաղան բարձրացվեցին, գնդակահարվեցին կալվածատերերի ու կապիտալիստների կողմից, հազարավոր մարտիկներ փտում էին ցարական բանտերում... Դե, ուրեմն պատվով կրեցեք այդ կարմիր վզկապը, ամուր բռնեցեք ձեր ձեռքում կոմունիզմի կարմիր դրոշը»։

Կարմիր վզկապը պիոները կրում է դպրոցում, տանը, փողոցում։ Նա խնամքով է պահպանում իր վզկապը՝ կարմիր դրոշի այդ մասնիկը։ Իսկ ի՞նչ է նշանակում պահպանել վզկապը. հարդարե՞լ, երբ այն տրորված է, լվանա՞լ, երբ կեղտոտվում է։

Դա էլ է անհրաժեշտ։ Դա էլ է արտահայտում վզկապի նկատմամբ ունեցած քո հարգանքը. բայց «պահպանել վզկապը» բառերում ավելի խոր իմաստ կա...

... Հայրենական Մեծ պատերազմի ահեղ օրերն էին։ Սմոլենսկի մարզի Դեմյանկովո գյուղը գերմանական ֆաշիստները գրավեցին անսպասելիորեն։ Երբ զինվորներից մեկը մտավ կոլտնտեսուհի Վինոգրադովայի խրճիթը, նա իր առջև տեսավ մի տղայի, որի կրծքին վառվում էր պիոներական կարմիր վզկապը։ Վանյան չէր հասցրել հանել ու թաքցնել վզկապը։

Արնակալած աչքերը լայն բաց արած ֆաշիստը գազանի նման հարձակվեց տղայի վրա և սկսեց քաշքշել վզկապը։

— Չե՛մ տա, չե՛մ տա,— բղավում էր Վանյան և սուր ատամներով սեղմում նրա ձեռքը։

Ֆաշիստն ատրճանակն ուղղեց դեպի Վանյան։

«Միևնույն է, ես թշնամուն չեմ տա իմ պիոներական վզկապը», շշնջաց նա և ատելությամբ լի հայացքով նայեց թշնամու աչքերի մեջ։ Ֆաշիստը կրակեց։ Վանյան ընկավ։ Նա վարվեց այնպես, ինչպես դրոշակակիր մարտիկը պատերազմի դաշտում։

Վանյան հավատարիմ մնաց այն երդմանը, որ տվել էր իր ընկերների առաջ՝ պիոներական կազմակերպության մեջ ընդունվելիս։

Երբ Մոսկվայում կազմակերպված առաջին պիոներական ջոկատին բանվորները կարմիր դրոշ էին հանձնում, նրանք նակազ տվեցին՝ պահպանել Հայրենիքի հարստությունները, կոփել մարմինը, լինել ազնիվ, ճշտապահ, առույգ, աշխատասեր, ընդլայնել պիոներական կազմակերպության շարքերը, լինել խիզախ։

Տասնյակ տարիներ են անցել այն օրվանից. պիոներները սրբությամբ են կատարում այդ պատգամը։ Նրանք պիոներներ են կոչվում, որովհետև գնում են բոլոր երեխաների առջևից, օրինակ են հանդիսանում նրանց համար։ Երբ ասում ենք պիոներ, պատկերացնում ենք կարմիր վզկապը կրծքին, ուշիմ, աշխատասեր, ազնիվ, խիզախ տղա կամ աղջիկ։ Պիոները լավ է սովորում, օգնում է ընկերոջը, հոգատար է փոքրերի ու մեծերի նկատմամբ։

...Հունվարյան մի օր Երևանի № 72 դպրոցի պիոներական դրուժինայի խորհրդի նախագահ, գերազանցիկ աշակերտուհի Լյուդմիլա Վարդանյանը իր փոքրիկ քրոջ ձեռքը բռնած, դուրս եկավ փողոց։ Նա խնամքով ուղղեց վերարկուի տակից երևացող վզկապի ծայրը, ապա ուշադրությամբ նայելով չորս կողմը, քրոջ հետ քայլեց դեպի փողոցի անկյունը։ Երբ արդեն նրանք խաչմերուկ էին հասել, Լյուդմիլան նկատեց մի ծեր կնոջ։ Նա հենվել էր ձեռնափայտին, շփոթված ու կարծես վախով նայում էր արագորեն անցուդարձ անող ավտոմեքենաներին։ Լյուդմիլան լսեց, թե ինչպես նա դիմելով իր կողքից անցնող շեկլիկ մի տղայի, ասաց.

— Օգնի՛ր ինձ՝ անցնեմ փողոցի մյուս մայթը, թոռնի՛կս, վատ եմ տեսնում...

Տղան անտարբեր նայեց պառավին և անցնելով փողոցի մեջտեղով, բարձրաձայն ասաց.

— Ես ժամանակ ունե՞մ...

Տատիկը հիասթափված շարժեց գլուխն ու դանդաղ քայլեց առաջ։ Լյուդմիլան մոտեցավ և բռնեց նրա թևից։

— Թույլ տվեք, ես ձեզ կօգնեմ. մեքենաները շատ են, վտանգավոր է։

— Շնորհակալություն,— ասաց տատիկը։— Ես նոր խնդրեցի մի տղայի, բայց նա մերժեց...

— Պիոները այդպես չէր վարվի,— ասաց Լյուդմիլան։



...ատրճանակն ուղղեց դեպի տղան։

Տատիկը ուշադրությամբ նայեց Լյուդմիլային. Նրա հայացքը կանգ առավ վզկապի վրա։

— Իսկ դու պիոնե՞ր ես,— հարցրեց նա։

— Այո,— մեջ մտավ Լյուդմիլայի փոքրիկ քույրիկը,— Լյուդմիլան պիոներ է, գերազանցիկ, ա՛յ, կարմիր վզկապ ունի։

— Տեսնում եմ, տեսնում,— ասաց տատիկը, եթե նույնիսկ վզկապն էլ չտեսնեի, վարմունքից կիմանայի, որ նա պիոներ է...

Լուսաֆորի կանաչ լույսը վառվեց։

— Գնանք, տատիկ, հիմա կարելի է փողոցն անցնել։

Եվ բռնելով նրա թևից Լյուդմիլան զգուշորեն առաջ գնաց...

Պիոների խնդիրները, նրա կերպարը բնորոշում է նրա հանդիսավոր խոստումը, որ աշակերտը տալիս է պիոներական շարքերն ընդունվելիս։ Ընդունելով հանդիսավոր խոստումը, ջոկատավարը նրա վզին կապում է կարմիր վզկապ։ Այդ րոպեից սկսած վզկապը պիոների անբաժան ընկերն է։

Պիոներական վզկապի երեք ծայրերը դա երեք սերունդների՝ կոմունիստների, կոմերիտականների և պիոներների անխախտ միասնության սիմվոլն է։ Պահպանել և պատվով կրել պիոներական վզկապը, նշանակում է բոլոր ուժերով ձգտել կատարելու Լենինի պատգամները՝ լավ սովորել, օգնել մեծերին իրենց ստեղծագործ աշխատանքում, ջերմորեն սիրել մեր սքանչելի հայրենիքը։

# ԴՊՐՈՑԻ ՋԵՐՄՈՑԸ

Ռ. ՂԱՍԱԲՅԱՆ

Լուսանկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Դպրոց մտնելիս ամենից առաջ ձեր ուշադրությունը կգրավեն դռների մոտ եղած բազմաթիվ բույսեր ու ծաղիկներ, որոնք դրված են հատուկ ստենդների վրա։ Այդպիսի ծաղկամաններ կան նաև միջանցքների լուսամուտների գոգերին։

Սակայն ավելի լավ է բարձրանանք դպրոցի երկրորդ հարկը։ Կամաց բացում ենք բնագիտական կաբինետի դուռը։ Առաջին բանը, որ նկատում ենք, դա սենյակի երկայնքով ձգված ապակեպատ ջերմոցն է։ Թեև ձմեռ է, բայց արևի ճառագայթները ողողել են ողջ սենյակը, իսկ ջերմոցի մեջ կախված են էլեկտրական լամպեր։

Սեղանների մոտ ինչ-որ գործով զբաղված են վեցերորդ դասարանի մի խումբ տղաներ ու աղջիկներ։

— Ահա մեր ջերմոցը,— ասում է բնագիտության դասատու Թութունջյանը։

Ճիշտ է, ջերմոցը մի քիչ նեղացրել է բնագիտական կաբինետը, բայց սենյակը շնչում է գարնան թարմությամբ։ Ջերմոցի այն մասում, որտեղ ջերմաստիճանն ավելի բարձր է, երեխաներն աճեցնում են կիտրոն, մանդարին, պոմիդոր, վարունգ, իսկ մյուս մասում՝ ելակ, չինական վարդ, հացաբույսեր...

— Դուք պատրաստվում եք դասի՞,— հարցնում ենք երեխաներին։

— Ո՛չ, մենք դպրոցի պատանի բնասերների խմբակի անդամներ ենք, եկել ենք աշխատելու մեր կանաչ լաբորատորիայում,— պատասխանում է մի ժիր տղա և ցույց տալիս իր աճեցրած մանդարինը, կիտրոնը, բեգոնիան։

— Մենք որոշեցինք բեգոնիան այլ կերպ աճեցնել,— պատմում է Վոլոդյան։— Վերցրինք բեգոնիայի մի քանի տերև, կտրեցինք և դրեցինք

խոնավ ավազի մեջ, որպեսզի արմատակալեն։ Քսանհինգ օր հետո տերևները տեղափոխեցինք ծաղկամանների մեջ։



Ա. Թադևոսյանը և Ռ. Սարգսյանը ջերմոցի մոտ։

— Բոլոր տերևներն էլ արմատակալեցի՞ն,— հարցնում ենք նրան։

— Ո՛չ, մի քանիսը արմատներ չարձակեցին,— մեղավորի նման պատասխանեց նա։

— Իսկ ինչո՞ւ, իմացա՞ք պատճառը։

Վոլոդյան չպատասխանեց։ Պատասխանն ստացանք ուրիշից։

— Դրանք շատ բարակ տերևներ էին, հարկավոր էր տերևի գլխավոր երակից կտրվածք անել, իսկ Վոլոդյան դա հաշվի չէր առել։

Մենք ուշադրությամբ դիտում ենք ջերմոցում տեղավորված բույսերը։ Ինչե՜ր ասես չկան։

Աշակերտները հետաքրքիր փորձեր են կատարում կարտոֆիլի վրա։

— Մենք բնագիտությունից գիտենք, որ եթե կարտոֆիլի ցողունը պահենք մթության մեջ, ապա նրա վրա պալարներ կառաջանան,— ասում է Արդան,— և մենք փորձով համոզվում ենք, որ դա այդպես է։ Տեսեք, ծաղկամանի մեջ կարտոֆիլ է աճեցված։ Երկրորդ ծաղկամանը կախել ենք վերևից, որի ներքևից անցք ենք բացել և կարտոֆիլի ցողունի մի մասը դրել երկրորդ ծաղկամանի մեջ։ Ստացվել է երկու հարկանի բույս։ Երբ ժամանակը գա, մենք կքանդենք երկրորդ հարկի ծաղկամանի հողը և կտեսնենք կարտոֆիլի պալարները։

Դպրոցի ջերմոցում մեզ ցույց են տալիս նաև ջրի մեջ աճող բույսեր՝ վարունգ և պոմիդոր։

— Դուք կարծում եք, թե դրանից պտուղներ չե՞նք ստանա,— ասում է Սվետլանան.— անպայման կստանանք։

— Իսկ եթե չստացաք։

— Երբ պտուղներ լինեն, մենք ձեզ կկանչենք,— վստահ ասում է Սուսաննան,— մենք չենք կասկածում, որովհետև ջրի մեջ լուծել ենք այն բոլոր պարարտանյութերը, որոնք անհրաժեշտ են այդ բույսերի սննդի համար։

Յուրաքանչյուր ծաղկամանի վրա գրված է, թե որ աշակերտն է աճեցնում տվյալ բույսը։ Ահա Ռոզա Զաքարյանի, Նելլի Հովսեփյանի, Հենրիկ Գրիգորյանի և մյուսների անունները։ Նրանք բոլորն էլ պատանի բնասերների խմբակի անդամներ են։ Բոլորն էլ ունեն իրենց հատուկ տետրերը, որտեղ գրանցումներ են կատարում։

— Իսկ տանը դուք բույսեր աճեցնո՞ւմ եք,— դիմում ենք երեխաներին։

— Իհարկե,— ասում է Արդան։— Ես տանը ունեմ ֆիկուս, կիտրոն, չինական վարդ։ Շատ գեղեցիկ ծաղիկներ ունի չինական վարդի թուփը, բայց ափսոս, որ դրանք շուտ են թառամում։

— Իսկ ես տանը կիտրոն եմ աճեցնում,— անմիջապես սկսում է փոքրիկ Վոլոդյան. հաճախ տերևները սրբում եմ բամբակով. չէ՞ որ բույսը լավ խնամք է պահանջում. խնամեցիր՝ լավ կաճի։ Երբեմն տղաներն ասում են, թե իրենց տան բույսերը չեն աճում։ Դե, եթե ամիսը մեկ անգամ նայեն բույսերին, իհարկե, չեն աճի։

Բնագիտական կաբինետում մի քանի երեխա զբաղված են նոր ծաղկամանների մեջ հող լցնելով։

— Ի՞նչ եք ցանելու,— հարցնում ենք նրանց։

— Այս աշնանը ծաղկի տոն եղավ, մենք էլ էինք մասնակցում այդ տոնին,— պատասխանում է Գրետա Բաբայանը։— Եկող աշնանը ավելի շատ ծաղիկներ կներկայացնենք։ Դրա համար սկսել ենք նոր ծաղիկներ աճեցնել։

Երևանի Օրջոնիկիձեի անվան դպրոցի կանաչ լաբորատորիան՝ ջերմոցը այնքան էլ մեծ չէ, սակայն այնտեղ աճում են բազմատեսակ բույսեր։ Մեծ ու լուսավոր սենյակում գարուն է, իսկական գարուն։

# ԿԱՆԱՉ ՀՐՎԱՆԴԱՆԻ ՎՐԱ

*Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ*

Սքանչելի է Արևմտյան Վրաստանի բնությունը, ամենուրեք սարահարթ է, բլուրներն ու հովիտները ծածկված են սաղարթավոր, փշատերև, մերձարևադարձային ծառերով ու թփերով: Հարթությունների և բլուրների վրա եղևնիներով ու նոճիներով եզերված փռվել են թեյի պլանտացիաները: Հեռվից թեյի թփերը ասես կողք-կողքի շարված կանաչ հովանոցներ լինեն: Դարավանդների վրա բարձրանում են նարնջենիները:

Սև ծովի մոտ տեսարանն ավելի հիասքանչ է դառնում: Ծովի կապույտ ջրերն ու երկնքի լազուրը ափերի վառ կանաչի հետ՝ հրաշագեղ մի պատկեր են ներկայացնում:

Գեղատեսիլ այս ափերին, Բաթումից ոչ հեռու, կանաչ հրվանդանի վրա փռված է Բաթումի բուսաբանական այգին, որը գրավում է հարյուր հեկտար տարածություն:

Այգին ունի տարբեր բաժիններ: Իր տեսակներով ավելի հարուստ է Արևելյան Ասիայի բաժինը: Այստեղ շատ են Չինաստանից բերված բույսերը: Մեծ հետաքրքրություն են ներկայացնում Հիմալայան, Ավստրալիական, Նոր Զելանդիայի, Մեքսիկայի բուսական աշխարհը ներկայացնող բաժինները:

Այժմ այգում աճում են 1200 տեսակի ծառ ու բույս: Դրանց մեջ կան մշտադալար, տարվա բոլոր եղանակներին ծաղկող պտղատու, տեխնիկական, դեկորատիվ, դեղատու և այլ տեսակի բույսեր:

Ահա խցանի կաղնին: Դա մի հաստաբուն, ավելի քան քսան մետր բարձրության ծառ է, որի հայրենիքը Միջերկրական ծովի ափերն են՝ Իսպանիան, Պորտուգալիան: Երբ այդ ծառը դառնում է քսան տարեկան, դրա կեղևից սկսում են խցան պատրաստել: Դրանից հետո կեղևից կարելի է կտրել տասը տարին մեկ անգամ: Խցանի կաղնին, որն ապրում է երկու հարյուր տարի, կարող է տալ տասնուր կիլոգրամ խցան:

Մոտենում ենք մի այլ ծառի: Երբ մարդու ձեռքը կպչի տերևներին, մաշկի վրա կառաջանա կարմրություն, հետո էլ՝ վերք: Սա թունավոր, բայց շատ արժեքավոր ծառ է: Նրա բնափայտից մի տեսակ լաք է պատրաստվում, որի փայլը կարող է դիմանալ ավելի քան հարյուր տարի:

Անցնում ենք ավստրալիական բաժինը:

— Սա էվկալիպտ է,— ասում է գիտական աշխատողը,— տերևները արևին նայում են ուղղահայաց դրությամբ: Դրանից է, որ էվկալիպտների տակ ստվեր չի լինում: Իրենց հայրենիքում այդ ծառերից շատերը հասնում են հարյուր հիսուն մետր բարձրության: Էվկալիպտի տերևների մեջ կա թանկարժեք եթերային յուղ, որը օգտագործվում է տեխնիկայի մեջ, զանազան օծանելիքներ են պատրաստում: Էվկալիպտի բնափայտը օգտագործվում է ստորջրյա և ստորերկրյա կառուցումների, նավաշինության և այլ կարիքների համար: Էվկալիպտները շատ արագ չորացնում են խոնավ ու ճահճակալած հողերը: Այս հսկա ծառի սերմերը շատ մանր են, երկու հազար հատը կշռում է մեկ գրամ:



Ահա և հաստաբուն մամոնտի ծառը, որն ապրում է մինչև հինգ հազար տարի: Բուսաբանական այգու մշտադալար ու գեղեցիկ այդ ծառն ընդամենը հիսունմեկ տարեկան է, բայց երեք հոգով հազիվ ենք կարողանում գրկել բունը: Իր հայրենիքում սեկվոյա կամ մամոնտի ծառը հասնում է հարյուր հիսուն մետր բարձրության և ունի քսան մետր տրամագիծ: Այդ ծառը հրդեհից չի վախենում: Փայտն օգտագործվում է նավաշինության մեջ:

Մենք կանգ ենք առնում բուրումնավետ, գեղեցիկ ծաղիկներով մի խոշոր ծառի մոտ: Այդ ծառը կոչվում է մագնոլիա: Մշտադալար ու տերևաթափ վիճակում այստեղ կան մագնոլիաների բազմաթիվ տեսակներ: Սրանց արմատները, կեղևը, տերևները, ծաղիկները, պտուղն ու սերմերը բուժիչ նյութ են պարունակում: Մագնոլիայից քիչ այն կողմ աճել է գեղատեսիլ, ամուր ցողուն ունեցող բամբուկը: Նրանից պատրաստում են գեղեցիկ կահույք, դահուկի ձողեր, խողովակներ: Բամբուկի օրական աճը հասնում է մինչև մեկ մետրի:

Մի անգամ ֆերմերը գլխարկը դնում է բամբուկի վրա և պառկում հանգստանալու: Հետո, երբ ուզում է գլխարկը վերցնի, որ գնա, ձեռքն այլևս չի հասնում:

Մերձարևադարձային կուլտուրաներից առանձնապես հետաքրքիր է տունգի ծառը, որից ստացվող թանկարժեք յուղը օգտագործվում է նավաշինության մեջ և ավիացիայում: Արևմտյան Վրաստանի կոլտնտեսություններում այդ ծառերի այգիները այժմ հազարավոր հեկտարների են հասնում:

Այգում աճում է արևելյան արմավենի, որը շատ թանկարժեք, ցրտադիմացկուն տեխնիկական բույս է: Պտուղները մեծ քանակությամբ շաքար են պարունակում իրենց մեջ:

Ահա և բանանը, դեկորատիվ, փարթամ տերևներ ունեցող բազմամյա այս բույսը տարածված է Սև ծովի ափերին: Նա ծաղկում ու պտուղ է տալիս, սակայն այստեղ նրա պտուղները չեն հասունանում:

Աջարիայի վայրի բույսերի բաժնում մեր ու-

շադրությունը գրավում է սամշիթի (շիմշատ) ծառը։ Սրա փայտի տեսակարար կշիռը ջրից ծանր է, նրանից են պատրաստում դիմացկուն մաքոքները։ Նրա կողքին աճում է շագանակի ծառը, որի փայտը երկար է ապրում ու չի փտում։ Արևմտյան Վրաստանում այդ ծառի փայտից բնակարաններ են պատրաստում։

Մենք հիացած դիտում ենք չինական մշտադալար կաղնին, դափնի ծառը, բրգաձև նոճիները, դեկորատիվ արմավենիները, լայնատերև մուշմուլան։ Վերջինը ծաղկում է նոյեմբեր և դեկտեմբեր ամիսներին, բայց հյութալի դեղնավուն պտուղները հասունանում են մայիս ամսին։

Դուրս ենք գալիս այգուց։ Ծովից փչում է զով քամին։ Լսվում է թռչունների ուրախ ճռվողյունը։

Կանաչ հրվանդանի վրա փռված բուսաբանական այգին պատանի բնասերների սիրելի վայրերից մեկն է։

# ՀԱՅՆՐԻԽ ՀԱՅՆԵ

*Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*



*«Դյուսելդորֆ քաղաքը շատ գեղեցիկ է, և երբ օտարության մեջ հիշում ես նրան, պատահաբար չլինելով նրա բնակիչը, հոգիդ ինչ-որ խռովվում է։ Ես ծնվել եմ այնտեղ և ինձ այդպես էլ ձգում է տունը։ Իսկ երբ ես ասում եմ տուն, ապա հասկանում եմ Բոլկերյան փողոցը և տունը, որտեղ ես եմ ծնվել»։ Այսպես կարոտանքով ու անհուն քնքշանքով է մտաբերել գերմանացի մեծ բանաստեղծ Հայնրիխ Հայնեն իր մանկության հարազատ վայրերը Հռենոսի ափերին։ Հռենոսյան Դյուսելդորֆ քաղաքում նա ծնվեց 1797 թվականին աղքատ վաճառականի ընտանիքում։ Այդ ժամանակ Գերմանիան հետամնաց ֆեոդալական երկիր էր, բաժանված բազմաթիվ մանր իշխանությունների։ Ֆրանսիական զորքերը նվաճեցին Գերմանիան, և այնտեղ ստեղծվեցին բուրժուական կարգեր. իսկ դա առաջադիմություն էր։ Ֆրանսիացիներին սկսեց համակրել Հռենոսյան շրջանի բուրժուազիան։*

*Ապագա գրողի ընտանիքը նույնպես համակրում էր ֆրանսիացիներին։ Հայնեի հայրը ուզում էր տղային նապոլեոնյան զինվորական դարձնել, բայց ծնողների հույսերը չիրականացան, որովհետև Նապոլեոնը պարտություն կրեց։ Հայնրիխին ուզեցին առևտրական դարձնել, բայց նա չսիրեց վաճառականությունն ու բանկիրությունը։ Հայրն ստիպված նրան տվեց իրավաբանական կրթություն։ Իհարկե, Հայնեն սովորեց իրավաբանություն, բայց իրավաբանությամբ չզբաղվեց։*

*Նրան դեռ մանկուց հմայում էր գրականությունը։ Նա սիրում էր գիրքը, ժողովրդական երգերը, պատմությունները և ավանդությունները։ Նա տարված էր համաշխարհային հայտնի գրողների գործերի ընթերցանությամբ։ Սերվանտեսի, Գյոթեի, Շիլլերի երկերը նրա սիրած գործերն էին, նրանց լավագույն հերոսները իր սիրած հերոսները...*

*1821 թվականին Բեռլինում լույս տեսավ Հայնեի առաջին գիրքը՝ «Բանաստեղծություններ» վերնագրով, իսկ հետո ուրիշ գործեր։ Հայնեն գրեց իր ճամփորդական տպավորությունները։ Դրանց մեջ նա քննադատում էր Գերմանիայի հետամնացությունը և գովերգում ֆրանսիական ռևոլյուցիայի հերոսական ժամանակը։*

*1827 թվականին լույս տեսավ Հայնեի «Երգերի գիրքը»։ Դա գերմանական պոեզիայի համար մեծ նորություն էր։ Հայնեն համաշխարհային քնարերգուի մեծ համբավ ձեռք բերեց։ Նա շատ էր օգտվել ժողովրդական ստեղծագործությունից,*

բայց նրա մտքերը ինքնուրույն էին հնչում, գեղեցիկ ու կատարյալ:

Բանաստեղծը կախարդում էր իր աննման երգերով:

Հեռո՜ւ, հեռո՜ւ կթռցնեմ
Քեզ իմ երգի թևերին...

Եվ երևակայության հզոր թևերով նա թռցնում էր ընթերցողին դեպի հեռու աշխարհներ, դեպի հեռու հյուսիս, ուր կանգնած է մենավոր եղևնին և երազում է տաք հարավի արմավենու մասին: Նա թռցնում է Գանգեսի լոտոսածածկ ափերը:

Հայնեն նկարագրում է հրաշագեղ մայիս ամիսը, երբ անտառներում և դաշտերում բացվում են բողբոջները, սկսում գեղգեղալ թռչունները, ժայռից ցած է թափվում փրփրուն գետակը, կյանքն սկսում է աշխուժանալ: Գարնանը փոխարինում են տարվա մյուս եղանակները, կիզիչ ամառը, գույնզգույն աշունը, ձյունոտ ձմեռը...

Այստեղ երևակայականին միահյուսվում է իրական կյանքի տրոփյունը: Հայնեն դժգոհ էր կյանքից, նրա մուսան տխրամած էր... Նա ցույց էր տալիս, թե ինչպես է մարդը մաքառում կյանքի անարդարությունների դեմ, ինչպես է ուզում ազատ զգալ իրեն: Բայց Հայնեն չէր կարող հաց վաստակել իր գրվածքներով: Նրան հալածում էին թշնամիները: Նա հանգստություն էլ չուներ: Եղավ Իտալիայում, այնուհետև Հելհոլանդ կղզում 1830 թվականին լսեց ֆրանսիական ռևոլյուցիայի դեպքերի մասին: Այն թերթերը, որոնք նկարագրում էին ֆրանսիական ռևոլյուցիայի դեպքերը, նա անվանեց «Արևի ճաճանչներ, փաթաթված թերթի թղթում»: Նա ուզում էր, որ Գերմանիան էլ հետևի Ֆրանսիային:

Հայնեն շտապեց Փարիզ: Նա կարծում էր, թե ժողովուրդն իրոք ազատություն է ձեռք բերել, բայց դուրս եկավ, որ այդ ռևոլյուցիան ձեռնտու էր միայն բուրժուազիային:

Փարիզում նա շփվում էր ժամանակի հայտնի գրողների հետ, գրում նոր գործեր, լինում բանվորական թաղերում:

Հայնեն 1843 թվականին ծանոթացավ Կարլ Մարքսի հետ: Իրավաբանության երիտասարդ դոկտորը մեծ ազդեցություն թողեց Հայնեի վրա, նրա մտքերն ու ստեղծագործությունը նոր ընթացք ստացավ: Չնայած տատանումներին, նա համակրում էր կոմունիստներին:

«Ես նորից խոսում եմ կոմունիստների մասին, Ֆրանսիայի միակ պարտիայի, որը արժանի է վճռական հարգանքի»,— գրում էր նա:

Տիրողների նկատմամբ Հայնեի խոսքը դառնում է մարտական, շեշտակի, կծու ու խայթող:

Նա «Սիլեզիայի ջուլհակները» հրաշալի ոտանավորի մեջ նկարագրում է բանվորների պայքարը հին Գերմանիայի դեմ:

Խավար աչքերում արտասուք չկա,
Նստած դժնադեմ գործում են նոքա,
Գերմանիա, մենք քեզ պատանք ենք գործում,
Թունոտ ու քինոտ արցունքով լեցուն,
Գործում ենք, գործում...

«Ժամանակակից բանաստեղծություններ» շարքում ուրիշ հրաշալի գործեր էլ կային, որոնց մեջ ռևոլյուցիայի «խիզախ թմբկահարը» մարդկանց կոչում է ազատության պայքարի: Իսկ որքա՜ն լավ է գրված «Գերմանիա» պոեմը: Նրա ենթավերնագիրն էր «Ձմեռային հեքիաթ»: Այդպես ասելով Հայնեն հասկանում էր ռեակցիայի ձմեռային սառույցի տակ գտնվող հին Գերմանիան:

Հայնեն լավ գիտեր, որ նոր Գերմանիայի ազատությունը պետք է նվաճել կռվով...

Վերջին ութ տարին Հայնեն ծանր հիվանդ էր, պառկած անկողնում: Նույնիսկ այդ վիճակում նա հետևում էր 1848 թվականի ռևոլյուցիոն դեպքերին Գերմանիայում, գրչով կռվում էր ժողովրդի գործին դավաճանողների դեմ: Նա գրեց լիրիկական հրաշալի գործեր:

Հայնեն մեռավ 1856 թվականի փետրվարի 17-ին:

Հայնեի ստեղծագործությունները թարգմանվել են շատ լեզուներով: Նրա շատ բանաստեղծությունները հնչում են նաև հայերեն: Հայնեի լավագույն թարգմանիչներից են Հ. Հովհաննիսյանը, Հ. Թումանյանը, Ալ. Ծատուրյանը, Վ. Տերյանը: Առանձին գրքով հայերեն լույս է տեսել Հայնեի «Երգերի գիրքը»:

Այս տարի աշխարհի ժողովուրդները նշում են մարդկության ազատության ու երջանկության մեծ մարտիկ-բանաստեղծի մահվան հարյուր տարին:

# ԿԿՈՒՆ ՈՒ ԲՈՒՆ

*ԱՐ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*ՆԿ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ*



Մայրիկ կկուն բույն էր շինել
Ծառի ճյուղին անտառում,
Ու խնամքով հյուսել, հինել,
Եվ ձագ հանել իր բնում:
Հաճախ կկուն թռչում, գնում,
Որս էր բերում անտառից,
Ձագուկներին սիրով սնում
Իր բերանի պատառից:
Մի օր կկուն որսը կտցին
Եկավ, իջավ բնի մոտ...
Հանկարծ մի բու թռավ բնից՝
Կուրծքն ու թևերն արյունոտ...
Կկուն նայեց՝ բույնը դատարկ,
Չէր մնացել ոչ մի ձագ...
Փետուրները թափած անկարգ,
Բույնն՝ արյունոտ, ավերակ...
— Վա՜յ, կուրանաս, բո՛ւ սևերես,
Անձագ մնաս ու անտուն...
Ողջ աշխարհում բույն չճարես,
Միշտ «բուն» կանչես ապարդյուն...
Եվ այն օրից բուն կուրացած,
Բույնը կորցրած անտառում,
Գիշերն անքուն «բուն» է կանչում
Եվ հուսահատ թափառում...
Այն օրից էլ ահից կկուն
Բույն չի շինում սեփական,
Սրա-նրա բնում թաքուն
Ձու է ածում մեկական...

## ՔԱՄԻՆ ՈՒ ՏՂԱՆ

*ՀՈԲՈՍ ԱՊԵՐ*

Փոքրիկ տղան տան բակում
Նստած փայտ էր սղոցում.
Մեկ էլ փչեց գիժ քամին,
Տարավ գլխարկն ահագին:
Տղան դես-դեն վազվզում,
Քամուց գլխարկն էր ուզում.
— Ո՞ւր ես տանում, ասա՛, ո՛ւր,
Չարչարանքդ զուր է, զո՛ւր,
Չեմ վախենում, ա՛յ քամի,
Ինձնից ոչինչ չես տանի.
Հիմա նստած փայտե ձիս
Շուտ կհասնեմ գլխարկիս.—
Կարծես քամին վախեցավ,
Թողեց գլխարկն հեռացավ:
Իսկ նա հաղթած գիժ քամուն,
Հպարտ-հպարտ մտավ տուն:



# ԱՏԼԱՍԻ ԵՐԿՐՆԵՐ

## ՍԻՐԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Ես շատ եմ հետաքրքրվում աշխարհագրությամբ և ուզում եմ իմանալ, թե որո՞նք են Ատլասի երկրները, ինչո՞ւ են այդպես կոչվում:**

**Խնդրում եմ Ձեր ամսագրում գրեք դրա մասին:**

ԳԱՐՈՒՆ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ

*(Երևանի Շահումյանի անվան դպրոցի աշակերտ)*

*Աֆրիկայի հյուսիս-արևմտյան մասում գտնվում են Մարոկկոն, Ալժիրը և Թունիսը: Դրանք ընդհանուր անունով կոչվում են Ատլասի երկրներ:*

*Հունական ավանդության համաձայն Ատլասը Պրոմեթեոսի եղբայրն էր, այն հսկան, որն իր ուսերի վրա պահում էր երկնակամարը: Նա միաժամանակ հսկում էր այն այգին, որտեղ աճում էին «ոսկյա խնձորներ»: Ատլասն արժանանում է Պերսեյի նզովքին, որովհետև վերջինիս չի թողնում «անմահական խնձորներ» քաղել այգուց: Ատլասը հսկա սար է դառնում: Այստեղից էլ Աֆրիկայի այդ մասում գտնվող լեռներն ստացել են Ատլաս անունը: Հետագայում այդպես կոչվեցին նաև այն երկրները, որոնց սահմաններում գտնվում են այդ լեռները:*

*Ատլասի երկրներն իրենց բնությամբ և բնակչությամբ Աֆրիկայի մյուս մասերից շատ են տարբերվում: Հյուսիսային ծովափնյա շրջանների բնությունն ավելի մոտիկ է հարավային Եվրոպայի բնությանը: Լեռների այն լանջերը, որոնք ուղղված են դեպի Սահարա, համարյա անձրև չեն տեսնում և հողմահարվում են անապատային տաք քամիներից, որոնք հաճախ անցնում են նույնիսկ լեռների վրայով և թափանցում Միջերկրականի ափերը:*

*Ատլասի երկրների բուսական աշխարհը նույնպես նմանվում է Միջերկրական ծովափին ընկած Եվրոպական երկրների բուսական աշխարհին: Լեռների լանջերին այս ու այնտեղ հանդիպում են անտառներ: Սարահարթերի ընդարձակ արոտավայրերում արածում են եղջերավոր անասունների բազմաթիվ նախիրներ: Լեռների հարավային լանջերի ստորոտում և Սահարայի օազիսներում աճում է փյունիկյան արմավենին, որ այդ վայրերի բնակիչների համար սննդի հիմնական աղբյուրն է: Լեռներում պատահում են առյուծներ, ինչպես նաև հովազներ, բորենիներ, շնագայլեր, լուսաններ, աղվեսներ, եղնիկներ:*

*Հյուսիսային Աֆրիկայի հիմնական և վաղեմի բնակիչներն են բերբերները և արաբները: Բերբերներն ուժեղ կերպով ենթարկվել են արաբական ազդեցությանը: Այդ երկրները տարբեր ժամանակներում նվաճվել են փյունիկեցիների, հույների, հռոմեացիների կողմից:*

*Արաբները Աֆրիկայի այս մասը նվաճեցին դեռևս յոթերորդ դարում: Նրանք տարածեցին իրենց լեզուն և կուլտուրան: Ներկայումս այդտեղ տիրապետող լեզուն արաբերենն է, իսկ բերբերական լեզվով քչերն են խոսում: Ժամանակին այստեղ եկել են նաև նեգրերը: Հյուսիսային Աֆրիկայում հայտնվել են նաև եվրոպացիները՝ գլխավորապես ֆրանսիացիները: Քաղաքների մեծ մասը հիմնադրել են արաբները: Հյուսիսային Աֆրիկայի քաղաքներն իրենց ոճով հիշեցնում են Դամասկոս և Բաղդադ քաղաքները: Այնտեղ կան նաև եվրոպական թաղամասեր:*

*Հյուսիսային Աֆրիկայի երկրներից Մարոկկոն աշխարհագրական մի ամբողջություն չէ: Կա Ֆրանսիական Մարոկկո, Իսպանական Մարոկկո: Մարոկկոյի սահմաններում է գտնվում Տանժեր միջազգային զոնան:*

*Մարոկկոն իր անունն ստացել է Մարակեշ քաղաքից, որը արաբերեն նշանակում է «զարդարված»: Այս անունը Եվրոպա անցավ իսպանացիների միջոցով, որոնք այն աղավաղեցին՝ Մարոկկո արտասանելով: Նշանավորը և տնտեսապես զարգացածը ֆրանսիականն է: Դրա համար էլ Մարոկկո ասելով սովորաբար նկատի են ունենում Ֆրանսիական Մարոկկոն:*

*Ֆրանսիական Մարոկկոն զբաղեցնում է չորս հարյուր հազար քառակուսի կիլոմետր տարածություն և ունի ութ ու կես միլիոն բնակիչ:*

*Մարոկկոն ավելի քիչ է ենթարկվել հյուսիսային Աֆրիկան նվաճող զանազան ժողովուրդների ազդեցությանը: Մարոկկոյի բնակչության մեծ մասը մշակում է ցորեն, գարի, ինչպես նաև ձիթենիներ, ցիտրուսային կուլտուրաներ, փյունիկյան արմավ, խաղող: Մարոկկոն հարուստ է օգտակար հանածոներով՝ ֆոսֆորիտներով և երկաթով: Ֆոս-*



փորիտը տարվում է Ֆրանսիա, որտեղ նրանից սուպերֆոսֆատ արժեքավոր պարարտանյութ են պատրաստում։

Մարոկկոյի նավահանգիստներից շատերը միջազգային նշանակություն ունեն։

Ատլասի երկրներից իր տարածությամբ ամենամեծը Ալժիրն է, որը մայրաքաղաքից տարբերելու համար հաճախ կոչվում է նաև Ալժիրիա։ Տարածությունը 2.205 հազար քառակուսի կիլոմետր է, այսինքն չորս անգամ մեծ է Ֆրանսիայից։

Ալժիրի հարավային մասն անցնում է դեպի Սահարա։ Կլիման հյուսիսում նույնպես ծովային է։ Հիմնական բնակիչները բերբերներն են։ Ալժիրի բնակչությունը, գլխավորապես արևելքում կրել է հռոմեական, ապա նաև արաբական ուժեղ ազդեցություն։ Այնտեղ հիմա կան բերբերական լեզվով խոսող մարդիկ։ Ալժիրում էլ մշակում են նույն կուլտուրաները, ինչ Մարոկկոյում։

Հարավում մեծ մասամբ քոչվորական անասնապահությամբ են զբաղվում։ Արդյունաբերության գլխավոր ճյուղերը և շատ պլանտացիաներ պատկանում են ֆրանսիացիներին։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ուժեղացավ ամերիկյան ազդեցությունը։ Քաղաքներից կարևոր են Ալժիրը և Օրանը։ Դրանցից առաջինը գաղութի կենտրոնն է, իսկ երկրորդը՝ նրա նշանավոր նավահանգիստը։

Ատլասի ֆրանսիական տիրապետություններից ամենից փոքրը Թունիսն է։ Սա, ինչպես և Մարոկկոն համարվում է պրոտեկտորատ։

Աշխարհագրական տեսակետից Թունիսը Ալժիրի շարունակությունն է։ Նրա մեծ մասում անձրևները հազվագյուտ են։ Այստեղ գերազանցապես զբաղվում են ձիթենու մշակությամբ։

Հնում փյունիկեցիները՝ Կարթագենի հիմնադիրները, Թունիսում թողել են իրենց նյութական կուլտուրայի հետքերը։ Այստեղից են եկել նաև արաբները և տարածել իրենց կրոնը։

Թունիսը ավելի շատ է կրել արաբական ազդեցությունը, քան Ալժիրը կամ Մարոկկոն։ Կարթագենը և Թունիսը հերթով եղել են երկրի մայրաքաղաքները։ Երբ ֆրանսիացիները տիրեցին Թունիսը, դարձրին իրենց տիրապետությունների մայրաքաղաքը։ Ներկայումս Թունիս քաղաքում հաշվվում է 365 հազար բնակիչ. նա պրոտեկտորատի գլխավոր նավահանգիստն է։

Հյուսիսային Աֆրիկայի ժողովուրդները դուրս են եկել իրենց ազգային անկախության համար պայքարելու։ Նրանք կռվում են ֆրանսիական գաղութարարների դեմ։ Ֆրանսիական զորքերի ո՛չ մի բռնություն, ո՛չ մի սպառնալիք այլևս չի կարող ընկճել ազատության համար պայքարող հերոս մարդկանց։ Նրանց հետ է ամբողջ առաջավոր մարդկության համակրանքը։

Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ՁՄԵՌԱՅԻՆ ԳԻՇԵՐՎԱ ԵՐԱԶԸ»

Լևիկն ուզում էր դասերից փախչել, բայց Անահիտը միջանցքում կանգնեցրեց նրան:

— Ո՞ւր ես գնում:

Այդ հարցից Լևիկը մի պահ շփոթվեց, ապա ասաց.

— Ջրոսնում եմ միջանցքում:

— Պայուսակո՞վ ես զբոսնում, ինչ է…

Լևիկն զգաց, որ Անահիտը հասկացել է իր մտադրությունը, բայց նորից փորձեց խաբել, ասելով, թե գնում է հարևան դասարանի տղաներից թանաքաման բերելու:

— Դու մի խաբիր, պայուսակդ ինչո՞ւ ես վերցրել:

Տեսնելով, որ խաբել չի կարող նա կոպտում ու վիրավորում է Անահիտին, նրան մատնիչ անվանում և վերադառնում է դասարան:

Բայց հետո նա զղջում է իր արարքի




համար և այդ ամենի մասին գրում շարադրության մեջ:

Ուսուցիչը Լևիկի գրավոր աշխատանքը գնահատում է «5» և դա համարում է նրա ազնվության գնահատականը: Այդպես էլ կոչվում է պատմվածքը՝ «Ազնըվության գնահատականը»:

«Ձմեռային գիշերվա երազը» գրքում կան նաև ուրիշ պատմվածքներ: Դրանցից մի քանիսը տպագրվել են մեր ամսագրի 1954 թվականի համարներում, իսկ «Խլշիկ պլշիկը», «Խոստովանություն», «Պարծենկոտ ձկնորսը», «Կոշիկները քայլում են իրենք իրենց» և այլ պատմվածքներ դուք կարդում եք առաջին անգամ:

Այս գրքի հեղինակն է Ազատ Շահինյանը: «Ձմեռային գիշերվա երազը» հեղինակի առաջին գիրքն է և կարդացվում է հետաքրքրությամբ:

Գիրքը ձևավորել է նկարիչ Լ. Մանասերյանը:

## «ԱՅՈ ԵՎ ՈՉ»

Գուրգեն Բորյանը բազմաթիվ բանաստեղծություններ է գրել մանուկների




և պատանիների համար: Դրանք լույս են տեսել առանձին գրքույկներով:

Հայպետհրատը վերջերս հրատարակել է Գ. Բորյանի մանկական բանաստեղծությունների նոր ժողովածուն, նկարիչ Ս. Սաֆարյանի ձևավորումով:

«Այո և ոչ» գրքույկում բանաստեղծություններ կան տարբեր տարիքի երեխաների համար: Շատ ոտանավորներ կարող ես ընթերցել նաև կարդալ չիմացող քո փոքր եղբոր կամ քրոջ համար: Դրանց մեջ ամենալավը «Իմ ձին» բանաստեղծությունն է, որ կարող է անգիր սովորել նախադպրոցական հասակի ամեն մի երեխա:

«Այո և ոչ» գրքույկը ընթերցողին մեկ տանում է բնության գիրկը, մեկ սավառնակ ու նավ նստեցնում, հետո ձնեմարդ սարքել տալիս:

Գ. Բորյանը բանաստեղծություններ ունի մանուկ և պատանի ընթերցողներին հետաքրքրող բազմաթիվ հարցերի մասին:

## «ՇԱՏՐՎԱՆ»

Վենի են բռնվել քչքչան առվակը, ծիծեռնակը, սարյակը, հովը, ծառը, ձնծաղիկը, վարդենին: Նրանք ուզում են իմանալ, թե ով է գարուն բերում:

Երե ուզում ես իմանալ ինչով վերջացավ նրանց վեճը, կարդա Հենրիկ Հառությունյանի «Շատրվան» պատկերա-



զարդ գիրքը: Այդ հարցին պատասխան կտա «Գարունն ով է բերել» բանաստեղծությունը: Այս գրքում բանաստեղծություններ կան նաև փոքրիկ ձկնորսների, սուտասան ծիծեռնակի, պոչավոր աշակերտի, խոսող տիկնիկների, զարմանալի շղիկների և շատ ուրիշ հետաքրքիր բաների մասին:

Գիրքը լավ է ձևավորել նկարիչ Մ. Հառությունյանը:




Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

*(Շախմատի միջազգային վարպետ)*

Անցյալ տարվա սկզբներին սկսվեցին Սովետական Միության քսաներկուերորդ շախմատային առաջնության մրցումները: Այդ մրցումներում մասնակցում էին միջազգային ինը գրոսմայստեր, միջազգային կարգի յոթ վարպետ և շախմատի չորս վարպետ: Առաջին և երկրորդ տեղերը գրավեցին սովետական գրոսմայստերներ Վ. Սմիսլովը և Ե. Գելլերը:

Գելլերը դարձավ Սովետական Միության շախմատի չեմպիոնը:

Մայիս ամսին Սովետական Միության ուսանողական թիմը, որի կազմի մեջ էին մտնում Տայմանովը, Սպասսկին, Անտոշինը, Սուետինը, Վասյուկովը և Նիկիտինը մեկնեց Ֆրանսիա՝ ուսանողական միջազգային մրցումներին մասնակցելու համար: Մրցումները տեղի ունեցան Լիոն քաղաքում և ավարտվեցին սովետական ուսանողների փայլուն հաղթանակով: Նրանք գրավեցին առաջին տեղը և նվաճեցին աշխարհի չեմպիոնի կոչումը:

Հետաքրքիր անցան Սովետական Միության և ամերիկյան թիմերի միջև Մոսկվայում կայացած հանդիպումները: Ամեն մի կողմից մասնակցում էին ութ շախմատիստ: Մրցությունն ընթանում էր չորս խաղաշրջանով: Սովետական և ամերիկյան շախմատիստների միջև բոլոր նախորդ հանդիպումները միշտ էլ ավարտվել են սովետական շախմատիստների հաղթությամբ: Դրա համար էլ ամերիկյան շախմատիստները գերազանց ջանքեր էին գործադրում: Բայց, չնայած դրան, այս անգամ էլ ամերիկյան շախմատիստների թիմը պարտություն կրեց: Մեր շախմատիստները նորից ապացուցեցին ամբողջ աշխարհին, որ նրանք շատ ավելի բարձր են կանգնած և գերազանցում են արտասահմանյան բոլոր շախմատիստներին:

Պատանի շախմատիստների համաշխարհային առաջնության Բելգիայի մրցումներում առաջին անգամ մասնակցեց սովետական շախմատիստ Բ. Սպասսկին: Նա իր առաջին ելույթով փայլուն հաղթանակ տարավ և նվաճեց հաղթանակի դափնեպսակը: Նա դարձավ պատանիների գծով 1955 թվականի աշխարհի չեմպիոնը:

Մեր կարծիքով ամենանշանակալին Շվեդիայի Գետեբորգ քաղաքում կայացած միջազգային մրցությունն էր, որին մասնակցում էին աշխարհի ամենաուժեղ քսանմեկ շախմատիստները (չհաշված աշխարհի չեմպիոն Մ. Բոտվիննիկին և գրոսմայստեր Վ. Սմիսլովին): Սովետական Միությունից մասնակցում էին վեց շախմատիստ:

Անցյալ տարվա աշնանը Մոսկվայում տեղի ունեցավ մի ուրիշ մրցություն, այստեղ մրցում էին աշխարհի ամենաուժեղ շախմատիստուհիները՝ կանանց մեջ աշխարհի չեմպիոնի կոչման համար:

Սովետական շախմատիստուհի Օ. Ռուբցովան (Մոսկվա) այդ տուրնիրում գրավեց առաջին տեղը և իրավունք ձեռք բերեց մրցելու աշխարհի չեմպիոնուհի Ե. Բիկովայի հետ:

Հարավսլավիայի Զագրեբ քաղաքում, գերմանական ֆաշիստներից ազատագրվելու տասնամյակին նվիրված տուրնիրում մասնակցեցին նաև սովետական շախմատիստներ, գրոսմայստեր Վ. Սմիսլովը և Ե. Գելլերը: Գրոսմայստեր Վ. Սմիսլովը այս տուրնիրում փայլուն հաղթանակ տարավ և գրավեց առաջին տեղը:

Սուխումիում տեղի ունեցավ Սովետական Միության չեմպիոնի կոչման համար կազմակերպված կին շախմատիստների մրցում: Այստեղ առաջին տեղը և Միության չեմպիոնի կոչումը վաստակեց լենինգրադցի շախմատիստուհի Վ. Բորիսենկոն:

1955 թվականի մրցումները ապացուցեցին, որ սովետական շախմատիստներն ու շախմատիստուհիները մեծապես գերազանցում են արտասահմանյան խոշոր շախմատիստներին և հանդիսանում են ամենաառաջավոր և հզոր ուժը շախմատի միջազգային ասպարեզում:

## ՏԱԽՏԱՏ

Երկու քայլից մի քանի վարիանտներով կարելի է մատ անել:



Գտեք լուծման բոլոր վարիանտները և դրանք ուղարկեք խմբագրություն:

*Առաջարկ՝ Ժ. ԲՅՈՒԶԱՆԴՅԱՆԻ*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՋՈԿԱՏԱՅԻՆ ԽԱՂԵՐ

### ՓԱՅՏԻԿԻ ՓՈԽԱՆՑՈՒՄԸ

Գուրգենի հրահանգով առաջին և երկրորդ օղակները իրարից չորս քայլ հեռավորությամբ և խորությամբ շարք կանգնեցին:

— Վերցրեք սրանք և երկու ձեռքով պահեցեք ձեր գլխից վերև,—ասաց Գուրգենը և յուրաքանչյուր շարքի առջև կանգնած պիոներին հանձնեց ութսուն սանտիմետր երկարություն ունեցող մի փայտիկ:

— Իմ հրահանգը լսելուց հետո փայտիկները ձեր գլխի վրայով անմիջապես հանձնեք ձեզ հաջորդողին, նա էլ իրեն հաջորդողին և այսպես շարունակ: Յուրաքանչյուր շարքի վերջում կանգնած պիոները վերցնելով փայտիկը պետք է վազի և կանգնի իր շարքի առջևում և փայտիկը նորից փոխանցի իրեն հաջորդողին:

Այսպես խաղը կշարունակվի այնքան ժամանակ, մինչև փայտիկը նորից հասնի այն պիոներին, որն առաջինն սկսեց խաղը, բայց արդեն գտնվում է շարքի վերջում: Ով փայտիկը շուտ հասցնի ինձ, նրա շարքն էլ կլինի հաղթողը:

Խաղն սկսվեց:

Առաջին և երկրորդ օղակներից հետո խաղացին երրորդ և չորրորդ օղակները:



### ՀԻՆԳ ՇՐՋԱՆԱԿ



*Ջոկատավարը ջոկատը բաժանեց երկու հավասար մասի և խորությամբ շարք կանգնեցրեց։ Ապա յուրաքանչյուր շարքի առաջ, միմյանցից երկու մետր հեռավորությամբ դրեց հինգ շրջանակ, որոնք պատրաստված էին պարանից և ունեին քառասուն սանտիմետր տրամագիծ։*

*— Երբ դրոշակով ազդանշան կտամ,— ասաց ջոկատավարը,— յուրաքանչյուր շարքի պիոներները իրար հետևից, արագ, վերևից մարմնով պետք է անցկացնեն շրջանակները և վազելով նորից շարվեն իրենց տեղերում։ Խաղը կրկնվում է երեք անգամ։ Որ շարքը երկու անգամ շուտ շարվի, նա էլ հաղթող կհամարվի և նվերներ կստանա։*

*Այս խաղերը կարելի է կազմակերպել չորրորդից մինչև ութերորդ դասարանների աշակերտների համար։ Դրանք ճարպկություն և ճկունություն են սովորեցնում աշակերտներին։*

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԿԱՏՈՒՆ ԵՎ ՄԿՆԵՐԸ

(Ճիշտ լուծողը ստանում է երեք միավոր)



*Այս կատուն անուշ քնած է։ Երազում տեսնում է, որ իրեն շրջապատել են տասներեք մուկ։ Դրանցից տասներկուսը մոխրագույն են, իսկ մեկը՝ սպիտակ։ Կատուն լսում է, որ մեկը ծանոթ ձայնով ասում է.*

*«Մլավան, դու պարտավոր ես ուտել յուրաքանչյուր տասներեքերորդ մկանը՝ հաշվելով նրանց շրջանագծով միշտ մեկ ուղղությամբ այնպես, որպեսզի սպիտակ մկանը վերջում ուտես»։*

*Կատուն մտածեց, թե որից սկսի հաշվել, որպեսզի խնդիրը ճիշտ լուծի։*

*Օգնեցեք նրան։*

## ԳՏԵՔ ԱԶԳԱՆՈՒՆՆԵՐԸ

*(Ճիշտ լուծողն ստանում է հինգ միավոր)*

Կոլյան, Սաշան և Պետյան Վիտյայի դասընկերներն են: Տեղեկանալով Վիտյայի հիվանդության մասին, նրանք այցելեցին հիվանդին:

— Նորություններ կան,— ասաց Կոլյան,— կարող ես շնորհավորել Կորոլյովին. այսօր նա աշխարհագրությունից երկուս վաստակեց:

— Իզուր,— առարկեց տուժածը,— եթե Սաշայի խելքին չփչեր ինձ հուշել, երկուս չէի ստանա:

— Այնուամենայնիվ երկուսը գրանցվեց քո օրագրում,— ասաց Վավիլովը:

Դուռը թակեցին: Ներս մտավ փոստատարը:

— Նամակ Սմիրնովին,— ասաց նա:

— Մինչև նամակիդ ընթերցումը վերջացնելը,— ասաց Կոլյան,— ես Վոլկովի հետ շաշկի կխաղամ:

Աշխատեցեք գտնել Կոլյայի, Սաշայի, Պետյայի և Վիտյայի ազգանունները:

## Մի փոքր մտածիր

*(Ճիշտ լուծողն ստանում է երկու միավոր)*

Ունենք ութ միանման ֆիգուրաներ, որոնցից մեկն ավելի թեթև է: Կարո՞ղ եք արդյոք առանց կշռաքարերի օգնության



երկու անգամ կշռելով գտնել ավելի թեթև ֆիգուրան:

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Սպիտակ քար եմ
Կամ փոշի,
Համ եմ տալիս
Ձեր ճաշին:

Ի՞նչ կամուրջ է,
Վրան՝ սար,
Կամուրջի տակ՝
Ճանապարհ:

Այն որտե՞ղ է,
Որ ողջ տարում
Մի գիշեր է
Միայն լինում:

*Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Երգ պարտիայի մասին — Վ. ԱԼԱԶԱՆ
2. Խաղաղության արթուն պահապանը — Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . . 2
3. Հավաքույթը — Վ. ՏԱԼՅԱՆ . . . 3
4. Դահուկավորները — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ . . . 7
5. Դեռ կկռվենք — Լ. ՈՒՍՊԵՆՍԿԻ . . . 8
6. Սահմանի վրա — Հ. ՀԱՐՅԱՆ . . . 9
7. Իսկական բարեկամը — Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ . . . 11
8. Փայտահատի երգը — ՍԱՐՄԵՆ . . . 14
9. Փոքրիկ մարտիկը — Ի. ՄԱՐԵԿ . . . 15
10. Քարտեզը — Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . 18
11. Պիոներական վզկապ . . . 20
12. Դպրոցի ջերմոցը — Ռ. ՂԱՍԱԲՅԱՆ . . . 21
13. Կանաչ հրվանդանի վրա — Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ . . . 23
14. Հայնրիխ Հայնե — Լ. ԱՍՄԱՐՅԱՆ . . . 24
15. Կկուն ու բուն — ԱՐ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . 26
16. Քամին ու տղան — ՀՈԲՈՍ ԱՊԵՐ . . . 26
17. Ատլասի երկրներ — Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ . . . 27
18. Գրքերի աշխարհում . . . 29
19. Հզոր ուժը — Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ . . . 30
20. Հետաքրքիր ժամանց . . . 31
21. Պիոներական վալս — Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆ


*Շապիկի առաջին էջը՝ Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*
*չորրորդ էջը՝ Մ. ՍՈՍՈՅԱՆԻ*

Ձեռագրերը չեն վերադարձվում




„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*
*ՎՖ 00600: Պատվեր 78: Տիրաժ 5000: Տպագրական 4 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/II 1956 թ.:*
*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՎԱԼՍ

*Խոսք՝ Մ. ԿՈՐՅՈՒՆԻ*

*Երաժշտություն՝ Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆԻ*

Մենք, տղա, աղջիկ,
Ուրախ, երջանիկ,
Զվարթ կատակում,
Պարում ենք, երգում:

ԿՐԿՆԵՐԳ.— Դե, հնչի՛ր, հնչի՛ր,
Աշխույժ եղանակ,
Անուշ դողանջի՛ր,
Մեր երգ ու նվագ:

Ամեն լավ գործում՝
Տանը, դպրոցում,
Մենք առաջավոր,
Մեր շարքերն հզոր:

ԿՐԿՆԵՐԳ.— Դե, հնչի՛ր... և այլն.

Լույսն է Իլյիչի,
Մեր մեծ ուսուցչի
Մեր ճամփին ժպտում,
Մեզ առաջնորդում:

ԿՐԿՆԵՐԳ.— Դե, հնչի՛ր... և այլն.

ԱՇԽՈՒՅԺ



# ԼԱՎՆ ՈՒ ՎԱՏԸ












Օգտվելով այս նկարներից գրեցեք փոքրիկ պատմվածքներ և թղթակցություններ։